ԵՂԻԱԶԱՐ ՄՈՒՐԱՏԵԱՆ

# ՔՆՆԱԿԱՆ

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

## ԱՐՇԱԿ ԵՐԿՐՈՐԴԻ ԵՒ ԱՆՈՐ ՊԱՊ ՈՐԴԻՈՅՆ



ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ

Հայ. Տպ. «Արաքս»

1900

# ՔՆՆԱԿԱՆ
# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ
## ԱՐՇԱԿ ԵՐԿՐՈՐԴԻ ԵՒ ԱՆՈՐ ՊԱՊ ՈՐԴՒՈՅՆ

ԵՂԻԱԶԱՐ ՄՈՒՐԱՏԵԱՆ

# ՔՆՆԱԿԱՆ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

## ԱՐՇԱԿ ԵՐԿՐՈՐԴԻ ԵՒ ԱՆՈՐ ՊԱՊ ՈՐԴՒՈՅՆ





ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ
Հայ. Տպ. «Արաքս»
1900

# ԱԶԴ

Հակառակ մեր ջերմ փափաքին՝ բազմավաստակ վաղամեռ գրագիտի ամեն այն գրութիւնները որ վերջին ժամանակներու փոթորիկներէն պրծելով հասած են մեր ձեռք, միանգամայն հրատարակութեան տալ, ստիպուած ենք նիւթական պատճառներու նկատումով՝ աստ միայն «ՔՆՆԱԿԱՆ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ԱՐՇԱԿ Բ.Ի ԵՒ ԱՆՈՐ ՊԱՊ ՈՐԴԻՈՑՆ» գործն ի լոյս ընծայել որ տասն երկու տարիներէ ի վեր անտիպ կը մնար:

Սոյն կարեւոր գործի հրատարակութեամբ վարչութիւնս ազգօգուտ ձեռնարկ մ՚ըրած ըլլալ կը կարծէ, եւ կը յուսայ հանրածանօթ հեղինակին միւս գրութիւնները զոր ի ձեռին ունի, ուրիշ հատորով մը անյապաղ ի լոյս ընծայելու քաջալերութիւնն գտնել ընթերցասէր ազգայնոց կողմէ:

ՎԱՐՉՈՒԹԻՒՆ ՏՊ. «ԱՐԱՔՍ»Ի

# ՔՆՆԱԿԱՆ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ԱՐՇԱԿ ԵՐԿՐՈՐԴԻ
# ԵՒ ԱՆՈՐ ՊԱՊ ՈՐԴՒՈՅՆ

---

## ՅԱՌԱՋԱԲԱՆ

Պատմական անձինք ընդհանուր մարդկութեան սեփականութիւնն են, պատմական ճշմարտութիւնք ժողովրդեան իրաւունքն են։ Հետեւաբար այս կամ այն պատմագրի, այս կամ այն ժողովրդի մենաշնորհն չէ պատմութենէ հետեւութիւններ հանել ըստ հաճոյս, դատել, դատապարտել, պսակել կամ սուլել պատմական մեծ անձնաւորութիւններ՝ առանց վերաքննութեան՝ եւ բացարձակ վճռով։ Քննադատութիւնը կուգայ վաղ կամ անագան՝ եւ Նեմեսիսի կշիռն ի ձեռին՝ կուտայ իւրաքանչիւրին ըստ արժանեաց։

Մեր ազգին պատմութիւնն երկար ատեն ի մթան թողուց շատ կարեւոր կէտեր՝ որ շահաւոր էին ընդհանուր քաղաքակրթութեան տեսակէտով։ Մեր պատմութեան աղբիւրը բացող մեծ ծերունւոյն հեղինակութիւնը նուիրական ըրած էր անոր աշխատասիրութիւնն շատ եւրոպացի գիտնոց իսկ՝ որք անոր պատմութիւնն եւ ժամանակագրութիւնը նախապատիւ կը համարէին երբեմն պատմութեան հօր Հերոդոտի անման երկէն։

Սակայն վերջապէս գիտութիւնը՝ որ թէպէտ շատ նկատմամբ տակաւին մանուկ՝ այլ զարգացման անակնունելի քայլեր կ'առնու՝ սկսաւ մարդկային կենաց պատմութիւնը ոչ միայն գրքերու՝ այլ երկրի խաւերուն մէջ իսկ թղթատել՝ ուր մարդկային կոյր կրից ազդեցութիւնը չզորեր։

Այսպէս ուրեմն հնախուզական գիտութիւնք օժանդակելով բանադատութեան՝ ի վեր հանեցին մասնաւորապէս Արեւելեան գրեթէ նոր պատմութիւն մը՝ ուր մեծն Շամիրամ եւ զոռ Նինոս՝ Արեւելեան վաղեմի տերք՝ ոչ թագ ունին, ոչ գաւազան, ուր Սարդանապաղներ եւ Զոպիւրոսներ երեւակայութեան մէջ եւեթ գոյութիւն ունեցած են, ուր Աժդահակներ եւ Տիգրան Առաջիններ երազ կը թուին, ուր Մարաբաս ի զուր կ'որոնէ հարիւրաւոր տարի առաջ հիմնայատակ Նինուէի գրատունը, եւ ուրիշ այսպիսի մտացածին վէպեր, Արեւելեան դից եւ դիցանոյշներու առասպելներ՝ որք երբեմն իրական պատմութեան տեղ անցած էին։

Ուրեմն գիտութեան անողոք հարուածին ներքեւ իյնկաւ եւ մեր ազգին մեծ պատմագրին հսկայ շէնքը։ Այսօր յայտնի եղած է՝ որ Խորենացւոյն պատմութիւնը մեծ մասամբ պատմական վէպերու (*Romans Historiques*) շարք մ'է։ Օտարազգի հըմուտ բանադատք՝ ընդ որս եւ մեր ազգային նշանաւոր գիտուններ՝ Մ. Էմին, Ա. Գարագաշ, Ք. Պատկանեան հաստատած են զայս։

Սակայն պէտք չէ կարծել թէ Խորենացւոյ պատմութեան անկմամբը մեր ազգին վաղեմի փառքը նսեմացաւ, ոչ երբէք, երեւակայականին տեղ իրական փառք ստացանք. եւ ինչ որ *անմահ ծերունին* կ'ըսէր իբր բովանդակութիւն մեր հին պատմութեան՝ այսօր օտարազգի գիտունք կը վըկայեն անոր ճշմարտութիւնը. «Զի թէպէտ եւ եմք ածու փոքր եւ թուով յոյժ ընդ փոքու սահմանեալ՝ եւ զօրութեամբ տկար եւ ընդ այլով յոլով անգամ նուաճեալ թագաւորութեամբ, *սակայն բազում գործք արութեան գտանին գործեալ եւ ի մերում աշխարհիս, եւ արժանի գրոյ յիշատակի:»*

Մեր ազգին պատմութիւնն անսպառ հանք մ'է որ մեծ երակներ արձակած է ամեն կողմ. ասոնց հետեւելով կրնան ի վեր հանուիլ Արեւելից պատմութեան շատ մթին գաղտնիքներ. զի մեր ազգը կարծուածէն աւելի գործօն դեր ունեցած է Արեւելեան մեծ դէպքերու մէջ։ Ասիական աշխարհակալ ազգաց հետ շփուած, եւրոպական երկու մեծազօրն հին պետութեանց Հռովմայեցւոց եւ Յունաց երբեմն ոխերիմ երբեմն դաշնակից՝ միջին դարու կարեւորագոյն դէպքերէն՝ խաչակրաց աղիտաբեր արշաւանաց մասնակցած՝ մեր երկիրն եղած է միշտ մարդկային մեծ գաղթականութեանց ժամանակէն սկսեալ՝ ժամադրութեան տեղի նշանաւոր անցից։

Ուստի իրաւամբ է որ եւրոպացի արդի գիտունք խիստ մեծ կարեւորութիւն կ'ընծայեն մեր պատմութեան ուսմանն։

Բարեկամներէս նշանաւոր ազգային բժիշկ մեծ. Մ. Խ. Էճէնցի կ'ըսէր ինձ օր մը թէ իւր ծանօթներէն գերմանացի գիտնական մը հայերէն ուսած էր՝ մասնաւորապէս հայ պատմագիրներն ուսումնասիրելու նպատակաւ. զի «կը կարծէր թէ Արեւելքի պատմութիւնն՝ առանց հայ պատմագրաց օժանդակութեան անհնարին է լուսաբանել որպէս արժան է.»

Մեր անմահ Շահնազարեան անմոռանալի ծառայութիւններ մատոյց պատմական գիտութեան եւ ազգին՝ հրատարակելով մեկնաբանութեամբ մեր պատմագրաց անգին երկասիրութիւններ՝ որ էջմիածնի գրատան մէջ մուկերուն, ցեցերուն եւ փոշւոյ կեր պիտի ըլլային անվրէպ.

Արդ՝ փափաքելով դոյզն ծառայութիւն մը մատուցանել գիտութեան՝ մանաւանդ հայրենասիրական փոքր պարտականութիւն մը կատարելու համոզմամբ՝ գրեցի Արշակ Բ. ի եւ անոր Պապ որդւոյն *ճշգրիտ* պատմութիւնը՝ անոր շուրջ պատած առասպելախառն զրոյցներ, չարախօսութիւնք, վատահամբաւիչ կարկատուն վէպերն դուրս թօթափելով, եւ այսպէս ի վեր հանելով՝ հազար հինգ հարիւր տարուան անարգել յիշատակէ մը՝ երկու մեծ անձեր՝ որոց վրայ ազգը ստուգիւ պարծելու տեղի ունի. Քառասուն դարուց կենաց շրջանի մը մէջ՝ զոր բոլորած է մեր ազգը՝ դուն ուրեք կը պատահին այս երկու արքայից նման պատմական մեծ անձնաւորութիւննե-

րու որոց կեանք եւ արարքը *բոլորովին խեղա-թիւրուած են*՝ ի վնաս գիտութեան եւ ի նախատինս մեր ազգին հայրենասիրութեան։ Եւ մինչդեռ ժամանակակից օտարք գովեստով եւ ակնածութեամբ խօսած են այս երկու անուանի արքայից վրայ՝ հայը անօրինակ ապերախտութեամբ նզովիւք եւեթ յիշատակած է անոնց անունը։

Ժամ է արդ քաւելու այս ոճիրը։



# ՆԵՐԱԾՈՒԹԻՒՆ

**1. Արեւելեան եւ Արեւմտեան մրցումը, Պարսիկ եւ Յոյն՝ կամ Հռովմէական նախանձորդութիւնը։ 2. Հայք իբրեւ պատուար ընդդէմ Արեւմտեան արշաւանաց։**

## 1

*Արեւելեան հին քաղաքակրթութիւնն Եգիպտոսէն, Բաբիլոնէն եւ Նինուէէն իւր արշաւանքը կատարած էր յԱրեւմուտս։ Կեկրոպս, Կադմոս, Դանաւոս եւ Պեղոպս՝ իրական կամ առասպելական դիւցազունք այդ արշաւանաց՝ հանելով Պեղասգեան ցեղերն անտառներէն բնակեցուցեր էին զանոնք քաղաքաց մէջ եւ անոնց տուեր էին Դեմետրի ոսկեգոյն պարգեւը փոխանակ խոզկաղինի։ Յունական հանճարը վաղվաղակի իւրացուցեր էր արուեստական եւ իմացական ամեն ծանօթութիւնք՝ զորս յանդուգն բաղդախնդիրներ տուած էին անոր, եւ զինքն կրթելով իրեն վրայ տիրելու իրաւունք ստացած էին. աշակերտը իւր վարդապետին հաւասարիլ եւ զայն իսկ գերազանցել կը նկրտէր, անոր հետ մրցելու առիթ կորոնէր։*

*Ահա այս մրցման ոգւոյն այլաբանութիւնքն են՝ ոսկեգեղման աւարին, Տրովադայի պատերազմին վէպերը, Մարական, Աղեքսանդրի պա-*

տերալզմներ, որոց գրեթէ շարունակութիւնն եղան Հռովմէական հասարակապետութեան, Կայսրութեան պայքարները մինչև Բիւզանդեան կայսրութեան անկումը։

Արևելից և Արևմտից մրցման այս տարբեր կերպարանաց ներքև միշտ միևնոյն ոգին, նոյն նպատակ կ'ընդնշմարուի. — վաճառականութեան նիւթական բարեկեցութեան ընդարձակումը եւ պաշտպանութիւնը մէկ կամ միւս կողմէն։ Յոյնը կուզէ պաշտպանել մերթ իւր գոյութիւնն ընդդէմ ամբարտաւանն Տրովադայ՝ որ անոր ընտանեկան սրբութիւնն իսկ կ'արհամարհէ, կեղծիք նախանձու և մրցասէր ոգւոյ, եւ մերթ օգնութեան կը դիմէ Փոքր Ասիոյ արգասաբեր գաւառաց մէջ հաստատած գաղթականութեանց՝ որք ժամանակ ժամանակ խափիւռ ցրուեր էին Սև Ծովու, Միջերկրականի ափանց վրայ, և անտի ի Յունաստան ձեռն կարկառելով բարոյական եւ նիւթական օժանդակութիւն կընձեռէին իրենց եղբարց կամ կ'ընդունէին անոնցմէ։

Պարսիկը՝ որ երկու հարիւր յիսուն տարիի չափ՝ հին աշխարհին ոստիկանն եւ տէրն եղաւ՝ իբրև մօտաւոր ժառանգորդ Բաբելական և Նինուէական քաղաքակրթութեան՝ գերազանց աստիճանով մշակած էր զայն։ Եւ եթէ յունական մեծագոյն զօրավարներ և քաղաքագէտներ խաղալիկ եղան երբեմն արքայից արքային՝ մի՛ միայն բարբարոսի մը, աւերիչի մը ոսկիներէն չէին

*խափուեր՝ այլ կ'ակնածէին արիական զօրաւոր և յամառ կամքէ մը, սուր հանճարէ մը եւ յաւե-լունք նաև՝ գերազանց առաքինութիւններէ։*

*Սակայն Արեւմուտք պիտի յաղթէր, զի Ա-րեւմտեան բարուց, օրինաց մէջ անհատը չէր տի-րապետէր, իշխանը չէր աստուածանար՝ որպէս յԱրեւելս, այլ ժողովուրդը կ'զգար իւր անհա-տականութիւնը, Հայրենիք ունէր նա, կ'զգար թէ ինչո՞ւ համար կը կռուէր։ Ահա այս է երկուց աշխարհաց բնակիչներուն զօրութեան կամ տկա-րութեան, մեծութեան կամ անկման պատճառը։ Յարեւմուտս մարդը զարգացաւ, զօրացաւ, յԱ-րեւելս իշխանին ստորոգելիները զօրացան, ան-հատը տկարացաւ հետզհետէ՝ մինչեւ որ իսպառ ինկաւ, և իւր անկման մէջ քաշեց և զիշխանու-թիւնս։*

# 2

*Արիական կայսրութեան եւ Արեւմտեան ժո-ղովրդեան մրցման ասպարեզին մէջտեղ պատ-ուար մը կար՝ հզօր եւ հարուստ թագաւորութիւն* մ'որ իւր անկախութեան վտանգ կը համարէր*

---

(*) Ապա լաւ համարեցան զաշխարհն Հայոց նախ ընդ երկուս ի մէջ իւրեանց (Պարսիկ եւ Յոյն - Հռովմայե-ցիք) բաժանել՝ զի առէին թէ ի միջի մերում բնակեալ

*Արեւելից եւ Արեւմտից յաճախ ընդհարումը՝ եւ ատոր յառաջ գալիք հաւասարակշռութեան եղծումը։ Ուստի ի վաղ ժամանակաց կը տեսնեմք Հայոց կարեւոր մասնակցութիւնն այս կենաց պայքարին մէջ։*

*Երբեմն քաջն Զարմայր՝ իրական կամ երեւակայեալ իշխան մը Հայ բանակի մը գլուխն անցած Պրիամոսի օգնութեան կերթայ ընդդէմ Յունաց, եւ Տրովադայի պարսպաց ներքեւ կ'իյնայ սուր ի ձեռին՝ ի պաշտպանութիւն հաւասարակաց դատին։ Մերթ Վահէ, Տիգրան եւ Միհրդատ՝ Մակեդոնեան, Հռովմէական հոսանքին դէմ թումբ կը կանգնին։*

*Ստոյգ է որ մեր երկիրը շատ վաղ ժամանակէ հետէ՝ Սեմական մեծ կայսրութեանց ծաղկեալ ժամանակն իսկ հզօր էր եւ հարուստ, մինչեւ անգամ կարող զարնելու Ասորեստանեայց ահարկու աշխարհակալները, (*) բայց դաշնակցի պէտք*

---

է այս *հզօր եւ հարուստ թագաւորութիւն* լաւ է՝ զի այսու եղծանել եւ խանգարել կարասցուք զայս թագաւորութիւն նախ ընդ երկու բաժանել երկու թագաւորօք Արշակունեօք՝ զորս կացուցանեմք, ապա եւ ընդ նոսա կրծել ջանասցուք, *աղքատացուցանել*, ի մէջ արկանել ի ծառայութիւն, զի մի կարասցին ի մէջ մեր ամբառնալ զգլուխս: Բուզ. դպր. Դ. գլ. Ա:

(*) Երեսուն ութ դար առաջ Հայաստան (Ուրարդի) այնչափ զօրաւոր կազմակերպութիւն ունէր՝ որ ոչ միայն Ասորեստանեայց դէմ դնելու, այլ զայն զարնելու իսկ կարող էր: Մասբ. պատմ. Արեւ. գիրք Դ. գլ. Ժ:

ունէր՝ պէտք մ՚ուսուի ազատ եղած չեն աշխարհի մեծագոյն պետութիւնք։ Մեր երկիրը Արեւմտեան՝ կամ Արեւելեան զօրութեան պիտի կրթնէր՝ հետեւաբար ի հարկին միոյն կամ միւսին պիտի կարկառէր և իւր նիզակակցութեան աջը։ Հո՛ս է ահա մեր պատերազմաց մեծագոյն մասին՝ որով և մեր անկման գաղտնիքը։ Մեր Հայրենիքն աշխարհակալութեան պատերազմ չէ ըրած գրեթէ. մեր բոլոր կռիւներն եղած են ի պաշտպանութիւն ազգային կենաց։

Քրիստոնէական թուականէ առաջ մեր ազգին քաղաքականութիւնը պարզ էր. մեր թագաւորներ գրեթէ միշտ նիզակակից էին Պարսից՝ իբրև դրացի և ցեղակից պետութեան։ Սակայն Քրիստոնէութեան ընդունելութիւնն ի Հայաստան այս նախնի համերաշխութիւնը վերցուց մէջտեղէն. կրօնից տարբերութիւնը երկու գրեթէ տոհմակից ազգաց մէջ յառաջ բերաւ մոգերու և եկեղեցականաց նախանձընդդիմութիւնը՝ որ հետզհետէ սաստկանալով՝ երկու ժողովրդոց իրարմէ իսպառ ցրտանալուն եւ իրարու դէմ մղած աշխարհաւեր պատերազմաց պատճառ եղաւ։

Իրաւ է որ նախայարձակն պարսիկները եղան՝ ինչպէս որ համառակօրէն կը կարծուի, մեր կրօնը ջնջելու եւ մոգութիւն կամ մազդելական կրօնը անոր տեղ դնելու համար. ես այս կարծիքէն չեմ։

Պարսից արքայք՝ սկսեալ ի Կիւրոսէ և այսր

իրենց տիրած երկրին կրօնքը, բարքը, սովորութիւնը, ինքնօրինութիւնը՝ յաւելունք նաեւ լեզուն կը յարգէին, միայն կը խնդրէին անոնցմէ իրենց գերիշխանութեան ճանաչումը՝ հետեւաբար տուրք մը՝ որ խիստ աւելի դիւրատար էր՝ քան Հռովմէական անտանելի կեղեքումները։

Այսպէս Կիւրոս հրաման կուտար Հրէից երթալ իրենց Հայրենիքը, նորոգել տաճարը, իրենց սրբութիւնը՝ և կառավարուիլ իրենց ազատ օրինօք։ Կամբիս Եգիպտոսի տիրելով՝ կը յարգէր երկրին այլանդակ բազմաստուածութիւնը՝ որ այնքան տարօրինակ պարտ էր երևիլ արիական պարզ բնապաշտութեան քով. Նոյնպէս անեղծ կը թողուր Եգիպտացւոց ինքնակառավարութիւնը. և եթէ յետոյ կատաղութիւններ գործեց՝ այն Եթովպիոյ անյաջող արշաւանաց պատճառաւ իւր վրայ եկած մտաւոր խանգարման արդիւնքն էր՝ որուն զոհ գնաց իւր կինն ալ։ Դարեհ՝ իմաստուն աշխարհակալ եւ բարերար իշխան եղաւ. Նա կամեցաւ հաստատել պարսիկ պետութիւն մը՝ բոլորովին տարբեր Ասիական կայսրութիւններէն՝ որ եկեր անցեր էին ցայն վայր։ Ջուզեց բնաւ ի մի ձուլել այն ցեղերը որք կը բնակէին իւր գաւառներին հովանւոյն ներքև. այլ ընդհակառակն զանոնք քաջալերեց պահպանել իրենց մասնաւոր սահմանադրութիւնները։ Հրեայներուն հրաման տուաւ աւարտելու իրենց տաճարին շինութիւնը. Ասիոյ յոյները պահեցին իրենց զանազան

կառավարութիւնները, Փիւնիկէ՝ իւր արքայները և դատաւորները, Եգիպտոս՝ իւր ժառանգական թագաւորները։ Այլ այս տեղական իշխանութեանց վերեւը միակ հեղինակութիւն մը կար՝ դերիշխան ամենեցուն և նոյն ամեն ուրեք։(*)

Սակայն Սասանեան ցեղապետութեան վերջերը մոգերը սկսած էին աւելի ազդեցութիւն բանեցնել կառավարութեան գործոց մէջ։ Կրօնական այս դասակարգը՝ որ սոսկմամբ կը տեսնէր դրացի ազգի մը (Հայոց) մէջ նոր կրօնին ըրած արագ յառաջադիմութիւնն ի շնորհս անոր անխոնջ վարդապետաց՝ չէր կրնար բնականաբար անտարբեր մնալ՝ և կը գրգռէր պարսիկ իշխանները քրիստոնէական խտրականութեան դէմ։ Եւ որովհետև Հայ եկեղեցւոյ հարք՝ Պարսից պիղծ ազգէն Հայ ժողովուրդը հեռացնել՝ և Յունաց աւելի մօտեցնել կը ջանային՝ աստի արծարծեցաւ օր ըստ օրէ ատելութիւնը Պարսից և Հայոց մէջ՝ որ և այնչափ աղետից եղաւ պատճառ։ «Յետ որոյ Յազկերտ ոչ ևս ի նոցանէ (ի Հայոց) այլ զՃապուհ զորդի իւր թագաւորեցուցեալ Հայոց հնարս դառնութեան խորհելով՝ իբր թէ այնպէս հանապազ առ նմա նախարարքն յանգչիցին խօսիւք տուր և առիւք, խրախճա-

(*) Զարմանալի նմանութիւն անգլիական արդի տիրապետութեան՝ հակառակ սլաւական եւ գերմանական ցուլիչ քաղաքականութեան։ Տես Մասբ պատմ. արև. ժողով. գլ. Ե.։

*նութեամբ և զբօսանօք որոց, այլ և եկամուտ հարազատութեամբ մերձաւորեսցին խնամու-թեամբ, զի մարթ լիցի զնոսա ի դեն մազդե-զանց սաղապեցուցանել որով ամենևիմբ զատչի-ցին ի Յունաց»:* (*)

(*) Խոր. գլ. ԾԵ.:

# ԳԼՈՒԽ ԱՌԱՋԻՆ

## *ԱՐՇԱԿ ԵՐԿՐՈՐԴ*

*1.* Սիրիա թատր պատերազմաց ընդ մէջ աշխարհակալաց: *2.* Սասանեան զօրութիւն Մեծն Շապուհի օրով (*310 - 381*): *3.* Բիւզանդեան կայսրութեան վիճակը չորրորդ դարուն: *4.* Արշակ Բ. կը թագաւորէ (*350 - 369*): *5.* Մեծն Ներսէս կաթողիկոս կ'ընտրուի: *6.* Արշակայ պատգամաւորութիւնն առ Վաղէս. աքսոր Մեծն Ներսիսի: *7.* Պատճառ գժտութեան իշխանին եւ կաթողիկոսին: *8.* Քննութիւն Արշակայ վրայ եղած ամբաստանութեանց: *9.* Արշակ անկամիս կընէ հայ կաթողիկոսութիւնը: *10.* Շապուհ Արշակայ դաշնակցութիւնը կը խնդրէ: *11.* Յուլիանոս (ուրացող մականուանեալը) Արշակէն օգնութիւն կը խնդրէ. իւր թուղթն առ Արշակ: *12.* Հռովմայեցւոց անհաւատարմութիւնն առ Հայս: *13.* Արշակայ պատերազմներն ընդդէմ Պարսից: *14.* Թէ ինչո՞ւ խորէնացին բնաւ չխօսիր այս պատերազմաց վրայ: *15.* Ապստամբութիւն նախարարաց, Արշակայ երթն ի Պարսկաստան եւ Հայաստանի աղէտները: *16.* Մահ Արշակայ:

**1.** *Սիրիա ի վաղ ժամանակաց թատր եղած է պատմական մեծ անցքերու: Եգիպտացի, Ասորեստանցի, Պարսիկ և Մակեդոնացի աշխարհակալները հոն իրարու դէմ բաղխած են: Օրոնդ եւ Նաթսանա գետոց հովտին արտաքոյ կարգի արգասաւորութիւնը, Սիրիոյ բնական*

պատուարները՝ որոց շնորհիւ շատ անգամ աւ մը զինուորներ կարող կըլլային մեծ բանակաց դիմակալելու, վերջապէս վաճառականութեան համար անոր ընծայած բիւրազգի աղբիւրներն՝ ըրած էին այս երկիրը աշխարհակալներու անյագ տենչանաց հրապոյրը և արիւնուշտ ճակատամարտներու ասպարէզը։

Հռովմէական պետութիւնն իւր հասարակապետութեան ժամանակէն սկսեալ՝ զօրաւորին իրաւանց սկզբամբ տէր կանգնած էր Մակեդոնեան հարուստ աւարին եւ հաստատուած էր ի Սիրիա։

**2.** Սակայն Պարսկաստան իւր առած սոսկալի վէրքերէն բուժել սկսած էր՝ եւ շնորհիւ Սասանեան ցեղապետութեան քաջ իշխանաց՝ մանաւանդ մեծին Շապհոյ՝ (310 – 381) իւր բանակները շարաշար կը զարնէին յաճախ Հռովմէական լեգէոնները։ Երկարատեւ պատերազմներ որ եղան Բիւզանդեան կայսրութեան հետ՝ աւելի բարձրացուցին Արեաց զինուորական համբաւը և ընդարձակեցին Պարսից պետութեան սահմանները Միջագետաց և Ասորեստանի կողմէն՝ որք երբեմն Պարսիկ տիեզերասաստ կայսրութեան գաւառներն էին արդէն։ Թէ ի՛նչ աստիճան ահարկու եղած էր Սասանեան զօրութիւնն՝ զայս հասկընալու համար բաւական է գիտնալ որ Մեծն Կոստանդիանոսի գլխաւոր յաջողութեանց մին կը

*համարուէր Շապհոյ հետ կռած դաշինքն՝ որով արքայից արքայն կը խոստանար Քրիստոնէից վիճակին դառնութիւնը մեղմացնել ի Պարսկաստան:*

*Կոստանդիանոսի յաջորդաց օրով Սասանեան աճեցուն զօրութեան հեղեղը դարձեալ սկսաւ յորդել դէպի Հռովմէական կայսրութեան երկիրները։ Կոստանդ կայսրը ղրկեց ընդդէմ Պարսից իւր հօրեղբօրորդի Գաղղոս՝ որ փոխանակ զՇապուհ խոնարհեցնել ջանալու իւր անձն առաւել բարձրացնել խորհեցաւ, և գոհ չըլլալով Կեսար անուամբ ուզեց Օգոստոս ալ կոչուիլ* յԱրևելս։ Կոստանդ զինքը խաբէութեամբ կանչեց իւր մօտ եւ գլխատել տուաւ։ Կոստանդի մահէն վերջ Յուլիանոս կայսր ըլլալուն պէս գլխաւոր պարտականութիւնը համարեց Պարսիկներէն առնուլ կայսրութեան եղած երկարատեւ անարգանաց վրէժը՝ սակայն ինքն ինկաւ Պարսիկ սրոյն ներքև։*

**3.** *Մինչ Սասանեան զօրութիւնն կ'աճէր և կ'ստուարանար՝ Բիւզանդեան կայսրութիւնն իւր կործանման կը դիմէր։ Փոխանակ ջանալու վերստին հաստատել բանակին մէջ կարգապահութիւնն*

---

(*) Օգոստոս կայսեր մահէն յետոյ Հռովմէական կայսերք գահակից մը կունենային՝ որ *Կեսար* պատուանունը կառնէր եւ սովորաբար կայսրութեան թշնամեաց դէմ կերթար: Իսկ *Օգոստոս* տիտղոսը բուն կայսեր բաժին էր:

ժողովրդեան սրտին մէջ արծարծել Հայրենեաց սէրը՝ Բիւզանդեան կայսերք իրենց պալատը՝ կանանց, ներքինեաց և պալատականաց հաճոյից ու հնարից մատներ էին։ Կայսրութիւնն՝ բացի այս անկարգութիւններէն բռնուած էր կրօնական աշխարհաւէր վէճերուն՝ որք երկարատեւ և կատաղի եղան՝ և որոց վառարաններն տակաւին կը մնան՝ մին ի Հռովմ և միւսն ի Կ. Պօլիս. — Արիոսեանք և Ուղղափառք զիրար կը բզկտէին՝ ի փառս խաղաղութեան կրօնին՝ Կոստանդի ամբողջ իշխանութեան ժամանակ (337 – 361)։ Վաղէս առաւել գրգռեց այս կրօնական երկպառակութիւններն՝ յարելով Արիոսեանց կուսակցութեան։ Կայսերաց ընտրութիւնն արդէն զինուորաց ձեռքն անցած էր։

Այս Քրիստոնեայ պետութիւնը՝ որ անկարող էր. իւր ներքին խռովութիւնները յաղթահարելու՝ պիտի չկրնար անշուշտ օգնել Արեւելեան դաշնակից Քրիստոնէից ընդդէմ Արեաց վրէժխնդրութեան։

Այս ակնարկը՝ Սասանեան և Բիւզանդեան պետութեանց վիճակին վրայ՝ ըստ մեզ անհրաժեշտ էր՝ նախ քան սկսել մեր առաջադրեալ նիւթոյն՝ քաջ ևս ի վեր հանելու համար Արեւելեան Քրիստոնեայ ազգաց* պետերուն և ա-

(*) Զորս *բարբարոս* գեղեցիկ անուամբ կը պատուէին իրենց դաշնակից Հռովմայեցիք: Տես երես 70 *Յուլիանոսի թուղթ առ Արշակ:*

ռաջնորդաց կուրութիւնը՝ որ չկարենալով տես-նել ահագին խորխորատը ուր զիրենք կը գլորէր Արեւմտեան դաշնակցութիւնը՝ յիմարաբար իրենց թշնամի ըրած էին Արեւելեան հզօր պետութիւնն, որ իրենց դրացին եւ բնական պաշտպանն ու դաշնակիցն էր։

4. Կոստանդ կայսեր բազմածուփ իշխանութեան ժամանակ Հայոց թագաւորութեան գահն ելաւ Արշակ (իբր 350–369)։

Արշակայ ժամանակ Հայաստանի սահմանները թէպէտ ոչ այնչափ ընդարձակ՝ որչափ Մեծին Տիգրանայ (Արտաշէսի որդւոյն) օրով՝ սակայն դարձեալ բաւական էին հզօր և հարուստ ազգ անուանել տալու զմեզ։

Երբ Արշակ թագաւորեց՝ Շապուհ դարձեալ պատերազմի մէջ էր Յունաց (Հռովմէացւոց) հետ։ Արշակ՝ թէպէտ պատերազմող քաջ զինուոր՝ բայց միանգամայն շրջահայեաց իշխան ըլլալով՝ չուզեց այս երկու մեծ ոսոխներէն միոյն կամ միւսին կողմն հակիլ՝ այլ իւր զօրութեան կըրթնաց՝ չեզոք կեցաւ՝ զինքն պատկառելի ընելու՝ և իւր վճռող սուրը ի դէպ ժամանակի՝ պատերազմի կշռոյն մի կամ միւս նժարին մէջ նետելու համար։

Արշակ զբաղեցաւ նախ և առաջ՝ իւր երկրին խանգարեալ կարգ և կանոնը վերահաստա-

*տելու, իշխանները և նախարարներն իրենց օրինաւոր վիճակին մէջ դնելու և Հայաստանի սահմաններն ապահովելու։*

*«Յայնմ ժամանակի ի խնդիր ելանէր արքայն Արշակ տոհմին զօրավարաց ազգին քաջացն Մամիկոնենից. մանաւանդ զի իւր դայեակս և սնուցիչք էին։ Ապա երթեալ գտանէր զնոսա յամուրս աշխարհին Տայոց՝ յիւրեանց աշխարհին, և դարձուցանէր զնոսա յընդանութիւն զի պառակտեալք և քակտեալք էին յընդանութենէն և յամենայն գործոց Հայոց ի ժամանակս խուլութեանն Տիրանայ (*)։ Եւ կացոյց զՎարդան զերէց եղբայրն ի նահապետութիւնն ազգին իւրեանց, և զՎասակ զմիջին եղբայրն զիւր դայեակն ի սպարապետութիւնն զօրավարութեան յիւրս պատերազմացն, սոյնպէս և զկրտսերն ի պէտս զօրացն կացուցանէր։ Սոյնպէս և զամենայն ազգսն զօրացն մեծամեծացն նահապետացն, որպէս առաջին թագաւորքն նուաճեալք յիւրաքանչիւր չափու: Եւ հնազանդէր զմեծամեծսն զիւրաքանչիւր զօրս բաժանեալ յամենայն կողմանց. սահմանացն Հայոց սահմանապահս կացուցանէր։ Եւ նորոգեցաւ զուարթացաւ տէրութիւնն թագաւորութեանն Հայաստան երկրին որպէս եւ զառաջինսն. մեծամեծքն յիւ-*

(*) Տիրան սկսած էր զնախարարութիւնս ջնջել, ուստի անոնցմէ շատերը զրկելով իրենց առանձնաշնորհութիւններէն՝ ցիր ու ցան բրած էր: Ո՛ւր էր թէ այնպէս մնային:

րաքանչիւր գահու, և գործակալքն յիւրաքան-չիւր չափու*։»

Անգին էջ մ՚է այս՝ Արշակայ ի պաշտպանու-թիւն, և անջինջ մահարձան անոր յիշատակին։

5. Արշակ երկրին զինուորական, քաղաքա-կան կարգն ու կանոնը նորոգելով, զուարթացը-նելով միայն գոհ չեղաւ։ Եկեղեցին անհովիւ էր, ուզեց զայն ևս նորոգել զուարթացնել։ Ուստի ի ժողով գումարեց՝ ըստ ազգային սովորութեան՝ բոլոր նախարարներն և իշխանները՝ խորհելու թէ զով ընտրել արժան է։ Ամենքն կը փափաքէին Ս. Գրիգորի զաւակէն յաջորդ տեսնել անոր գա-հուն վրայ։

«Զի ամենեքեան ասէին ցարքայն. վասնզի նորոգեաց Աստուած զթագաւորութիւն ձեր*, սոյնպէս պարտ է ի յայնմ զաւակէ նորոգել զհո-գեւոր նահապետութիւնն։ Զի ընդ նորոգել այնր աթոռոյ, ասեն, նորոգեսցին պայծառ վարք աշ-խարհիս Հայոց*»։

Արշակ ազգին մեծամեծաց և ժողովրդեան միահամուռ յայտնած փափաքին համաձայն իւր սենեկապետ Ներսէս՝ Յուսիկ կաթողիկոսին

---

(*) Բուզ. դպր. Դ. գլ. Բ.

(*) Ձեր՝ այսինքն Արշակունեաց՝ որ Հայոց սիրելի արքայական ցեղն էր:

(*) Բուզ. դպր. Դ. գլ. Գ.

թոռը՝ Աթանագինէի որդին՝ կաթողիկոս դրաւ։

Ներսէս ստուգիւ արժանի եղաւ իւր մեծ անուան՝ Հայաստանի մէջ ըրած մեծագործութեամբը։ Ինչ որ Արշակ ըրած էր քաղաքական և զինուորական կարգին մէջ՝ Ներսէս նոյնն ըրաւ՝ կրթական եւ մարդասիրական կարգին մէջ. մին նորոգեց զուարթացուց մարմինը, միւսը անոյց և կազդուրեց միտքն ու հոգին։ Բոլոր քրիստոնեայ աշխարհին վրայ դուն ուրեք կը գտնուի այսպիսի նշանաւոր եկեղեցական մը։ Ի բաց առեալ մեծ Սահակ եւ Մեսրոպ որ զազգն իսկ անմահացուցին իրենցմով՝ Ներսէս՝ Հայոց ամենէն մեծ բարերարն է եկեղեցական դասուն մէջ։

6. Արշակ երկրին ներքին բարեկարգութիւնն ի գլուխ հանելէ վերջ՝ ուզեց դրացի ազգաց հետ իւր տերութեան յարաբերութիւնները նորոգել, և ամեն կողմէ ապահովել իւր Հայրենիքը։ Արշակ Շապհոյ հետ թէպէտ դաշնակից չէր՝ սակայն թշնամի ալ չէր ուզէր ըլլալ, անոր համար Կոստանդ, Յուլիանոս, Վաղէս կասկածով կը նայէին անոր վրայ և ապահով չ'էին անոր անկեղծութեանը, թէպէտ Արշակ մի՛ միայն անոնց շահուն ծառայած էր՝ միշտ հաւատարմաբար պահելով այս զեղծ և անքարոյական արքունեաց և պետութեան դաշնակցութիւնը։ Կերևի թէ Արշակ իւր բարեկամութեան հաւաստիքը նորոգելու համար անգամ մը հանդիսաւոր պատգամաւորու-

թիւն մը յղած է առ կայսրն Յունաց։ Ըստ Բուզանդայ այս պատգամաւորութիւնն գնաց ի Բիւզանդիոն առ Վաղէս՝ եւ թէ Վաղէս արիոսեան ըլլալուն համար՝ աքսորեց զՄեծն Ներսէս՝ գլուխը պատգամաւորաց՝ որով Արշակայ վրէժխնդրութիւնը գրգռեց ընդդէմ իւր։

Ըստ Խորենացւոյ՝ Շապուհ պատերազմի երթալով ընդդէմ Յունաց Արշակայ նիզակակցութիւնը կը խնդրէ. Արշակ կ'օգնէ անոր։ Վաղէս ազատելով իւր պատերազմներէն՝ զօրք կը ղրկէ Արշակայ վրայ։ Արշակ Մեծն Ներսիսի միջնորդութեան կը դիմէ. կաթողիկոսը կերթայ Յունաց բանակը, կ'աղաչէ որ Հայաստանի վնաս չ'ընեն, այլ՝ ետ մնացած հարկերը զոր Արշակ չէր վճարած ապստամբիլ ուզելով՝ առնուն Արշակայ որդին Պապն ևս պատանդ տանին իրենց հետ՝ եւ դառնան խաղաղութեամբ։ Թէոդոս fաղցr եւ մեծ զօրավար կը հաճի ունկն դնել Մեծին Ներսիսի աղաչանաց և կը դառնայ առ կայսրն զՄեծն Ներսէս ալ հետը տանելով հանդերձ Արշակայ չքմեղանաց թղթով։ Վաղէս ոչ թուղթը կ'ընթեռնու ոչ Մեծն Ներսէսը տեսնել կուզէ՝ այլ կը հրամայէ աքսորել կաթողիկոսը և սպաննել բոլոր նախարարաց որդիները որ պատանդ ղրկուած էին։

Այս դէպքը՝ թէ Բուզանդայ պատմածը եւ թէ Խորենացւոյն առասպել է՝ կամ հասարակ եղելութիւն մը արտաքոյ կարգի մեծցած եւ այլայլած կը թուի։

Նախ չեմք կարծեր որ Արշակայ այս պատգամաւորութիւնը՝ որուն նպատակն էր՝ ըստ Բուզանդայ՝ երկուց երկրաց մէջ եղած միաբանութեան դաշինքը նորոգել՝ Վաղէսի ժամանակն եղած ըլլայ։ Արշակ ընդ ամենը՝ չորս կամ հինգ տարի հազիւ թագաւորած է Վաղէսի օրով. անոր իշխանութեան մեծագոյն մասն անցած է Կոստանդի, Յուլիանոսի եւ Յոբիանոսի ատեն։ Արդ հաւանական չէ որ այսպիսի կարեւոր պատգամաւորութիւն մը Արշակ իւր իշխանութեան վերջերն ըներ։ Ուստի Մեծին Ներսէսի ի Վաղէսէ աքսորանաց պատմութիւնը մեզի բոլորովին չինծու կամ վերջին աստիճան այլայլած կը թուի։ Մանաւանդ որ Բուզանդ կը գրէ թէ այս աքսորանաց պատճառաւ Արշակ եօթն տարի շարունակ աւերեց Յունաց պետութեան երկիրները՝ մինչեւ ի քաղաքն Անկիւրացւոց։ Ամիանոս ժամանակակից լատին պատմագիրն այսպիսի մեծ պատերազմի մը վրայ բնաւ չ՚խօսելէ զատ՝ կ՚ըսէ թէ Արշակ շարունակ հաւատարիմ մնաց Հռովմէական դաշնակցութեան։

Ամենէն հաւանականը այս կը թուի թէ Արշակ յօգուտ Հռովմայեցւոց թշնամացած ըլլալով Շապհոյ հետ՝ երբ իւր իշխանութեան վերջին տարիներն շարունակ կը պատերազմէր ընդդէմ Պարսից՝ գուցէ անգամ մը օգնութիւն խնդրած է Վաղէսէն՝ և սա մերժած է օգնել իւր դաշնակցին։ Հռովմայեցւոց այս անհաւատարմու-

թիւնը կը վկայէ Արշակայ եղերական վախճանը։

Իսկ Խորենացւոյ միւս գրածն՝ թէ Արշակ ապստամբիլ ուզեց և ապա՝ նեղը մնալով հարկերը վճարեց և պատանդներ տալով Մեծին Ներսիսի միջոցաւ հաշտուեցաւ՝ ամբողջապէս հնարուած է, զի ոչ Բուզանդէն՝ և ոչ ժամանակակից պատմագրէն (Ամիանոսէ) կը հաստատուի։

Մեծին Ներսիսի ի Վաղէսէ աքսորուիլը մենք կը կարծեմք թէ հետևեալ կերպով միայն կրնայ մեկնուիլ։ Վաղէս կատաղի Արիոսեան ըլլալով՝ շատ անգամ հանդիսաւոր վիճաբանութիւններ ընել կուտար իւր կայսրութեան այլ և այլ գըլխաւոր քաղաքներէն ժողոված եպիսկոպոսաց. այս վիճաբանութեանց միոյն գուցէ ներկայ գտնուած է Մեծն Ներսէս՝ իբրև Արևելեան եկեղեցւոյ հայրապետներէն մին՝ որոյ անունը և հեղինակութիւնը պատկառելի էր Յունաց մէջ իսկ։ Եւ որովհետև Վաղէս իրօք հալածեց արիոսեանց հակառակ կուսակցութեան եպիսկոպոսները՝ կարելի է որ Մեծն Ներսէս ալ անոնց հետ ժամանակ մը արգիլուած մնաց տեղ մը, կամ իրեն բարեկամ եկեղեցական Յոյնք չթողին իրեն երևան ելնել՝ Վաղէսի յիմարութեան զոհ չերթալու համար։ Այսպէս,, կերևի թէ Մեծն Ներսէս քիչ մը ժամանակ Հայաստանէն բացակայ գտնուած է, բայց ոչ Բուզանդայ գրածին չափ ինն տարի. հաւանական է որ Խորենացւոյ

գրածին պէս ութ ամիս տեւած է այս բացակայութիւնը։

«Այս վասն խաղաղութեան ուխտին միաբանութեան դաշինն*, որ էր աշխարհին Հայոց ընդ կայսերն Յունաց, դէպ եղև առաքել անդր կազմութեամբ մեծաւ արքային Հայոց. զի ինքնին մեծ կաթողիկոսն Հայոց Ներսէս, և ի մեծամեծացն Հայոց սատրապս տասն ընդ նմա առնել, զի երթիցէ. ի մէջ կայսերն և ի մէջ իւրեանց զուխտն հաւանութեան եւ խաղաղութեան նորոգեսցեն։ Ապա չոգան գնացին հասին ի կայսերական պաղատն թագաւորացն Յունաց»։

«Այսոքիկ են իշխանքն, որք չոգան ի թագաւորէն մեծէ Արշակայ ի Հայոց աշխարհէն առ կայսրն Յունաց առ Վաղէս։ Ինքնին մեծ եպիսկոպոսապետն Հայոց Ներսէս, և մեծ նահապետն Մամիկոնեան տոհմին, որում անուն Վարդան կոչիւր. եղբայր սա մեծի ստրատելատին Հայոց որում Վասակն կոչէր, որ դայեակք և սնուցիչք էին թագաւորին Արշակայ։ Եւ ընդ նմա Մեհեն նահապետն Ռշտունեաց, Մեհառ նահապետն Անձեւացեաց. եւ Գարջոյլ Մաղխազ նահապետն Խորխոռունեաց, եւ Մուշկ նահապետն Սահա-

(*) Այս խաղաղութեան, միաբանութեան ուխտի քաղաքական դաշինքի պայմանները ստեղծեցին հայ եկեղեցւոյ դաշանց թուղթը՝ զոր խայտառակեց անձամբ Վ. Շահնազարեանը:

ռունեաց, և Դեմետ նահապետն Գնթունեաց, և Կիշկէն նահապետն Բագէնից, և Սուրէկ նահապետն Հրոփձորոյ, և Վրկէն նահապետն Հաքուժենից. սոքա չոգան դեսպանութեամբ ի սէր միաբանութեան առ կայսրն Վաղէս։ Իսկ Թագաւորն Վաղէս արգել աքսորեաց զմեծ քահանայապետն Ներսէս, և փոխանակ նորա արձակեաց զեղբօրորդի զԹագաւորին Արշակայ զԳնել և զՏիրիթ. և գանձս բազումս և անթիւս վասն զմիտս հաճել Թագաւորին Արշակայ, ի ձեռս Վարդանայ և որք ընդ նմա էին, առաքէր։ Եկին հասին դեսպանքն երթեալքն ի կայսերէն առ Թագաւորն Հայոց մեծաց Արշակ. և մատուցանէին նմա զհրովարտակն կայսերն, և ընդ նմին գիր ողոմնջելոյ և ամբաստանութեան։ Զի դրեալ էր կայսրն զսրբոյն Ներսիսէ առ Թագաւորն Հայոց Արշակ, թէ նա սպան զորդին իւր զՄիամօր*, վասն այսորիկ արգելաւ աստէն. զի մի մեղադիր ինչ լինիցիս ընկալ և զպատանեակսդ առաջի զարձակեալսդ. զերկոսեան զեղբօրորդիսդ Արշակայ, զԳնելն և զՏիրիթն։ Ունէին և զանթիւ կարասի գանձուցն առաջի Թագաւորին։

«Իսկ Թագաւորն Արշակ իբրև լուաւ և ե-

---

(*) Իբր թէ Ներսէս ըսած ըլլայ Վաղէսի՝ որ եթէ չդառնաս չար ճամբէդ՝ երեք օրէն որդիդ պիտի մեռնի, եւ որովհետեւ Վաղէսի հիւանդ որդին նոյն սահմանեալ միջոցին կը մեռնի, Վաղէս կ'աքսորէ զՄեծն Ներսէս իբրեւ կախարդ:

*տես զայս ամենայն, անշնորհ առնէր զատալիսն և զբերբելիսն կարաստոյն։ Ի ցասումն մեծապէս բարկութեամբ ընդ կայսերն նիւթեաց, եթէ զիարդ իշխեաց արգելուլ զայնպիսի այր զմեծ և զպատուական, զգլուխ և զվարդապետ զառաջնորդ աշխարհի և զթագաւորութեան միոյ։ Բարինք բազումք, ասէ, ի վերայ կայսերն, և ձեր ի բերելդ. քարինք և մեր շատ կան ի թափել զատամունս նորա ի տալն, և ձեր ի բերելդ. զմեր վատթարութիւնս յո՛ տարայց. արդ այդմ երախտեացդ ես դարձուցանեմ։ Տայր հրաման Վասակայ իւրում զօրավարին զօր ժողովել, զգունդս վանդակել, եղանել հարկանել և աւար առնուլ զկողմանս Գամրաց։ Իսկ զօրավարն սպարապետն Վասակ, փաղփաղակն պտուեալ հրամանս նորա կատարէր, զզօրս բազումս իբրեւ զերկերիւր եւ զվաթսուն հազարայ ի մի վայր կուտէր. Հարկանէր աւար առնոյր զկողմանս Գամրաց մինչեւ ի քաղաքն յԱնկուրացւոց. զվեց ամ զմիմեանց զհետ աւերէր զաշխարհ սահմանացն Յունաց։ Լցան աւարաւ բազմաւ և պէսպէս մեծութեամբ բռնութեամբ սաստիւ մեծաւ թշնամութեամբ ընդ կողմանս ընդ այնոսիկ*»։*

*«Սաստիկ և յոյժ ահաւոր էր ի վերայ անիրաւաց Վաղենտիանոս**. որով և զբազումն իշխանս*

(*) Բուզանդ դպր. Դ. գլ. Ն. ԺԱ.

(**) Վաղենտիանոս Վաղեսի գահակիցն էր՝ որ կայսրութեան Արեւմտեան մասին վրայ իշխեց եւ բնաւ յարաբերութիւն չունեցաւ Հայոց հետ։

վասն յափշտակութեան սատակեաց, և զՈրդանոս ոմն Ներքինապետ՝ այրեաց կենդանւոյն. քանզի երիցս հրամայեաց և ոչ դարձոյց զյափշտակութիւն ընչից կնոջ միոյ այրւոյ։ Եւ ի նմին աւուր հասեալ այնց հրեշտակաց, զոր ի Հայսն առաքեաց, ցասուցին զնա առաւել զրուցովք՝ յԱրշակայ խորոխտանալոյն։ Եւ վասն զի ի ժամուն յայնմիկ ի ձեռին ունէր զբարկութիւնն, հրամայէ սպանանել զՏրդատ զեղբայրն Արշակայ՝ զհայր մանկանն Գնելայ։

«Եւ Թէոդոսի զօրու ծանու ելեալ, ի վերայ Հայոց դիմեալ, և հասեալ ի սահմանս Հայոց, զարհուրի Արշակ և առաքէ ընդ առաջ նորա զՄեծն Ներսէս. և ի հաշտութիւն մաղթեալ տայ լիով զխափանեալ հարկսն, և պայմանադրութեամբ պատարագօք ընդ նմին իսկ արձակէ զՄեծն Ներսէս։ Որոյ երթեալ և ի հաշտութիւն զԹագաւորն շարժեալ, մեծարի ի նոցանէ յոյժ. նա և զպատանդսն խնդրեալ առնու և դառնայ»։

Խորենացին ուրիշ պատգամաւորութիւն մը եւս կը յիշէ՝ որ Բուզանդէն փոխ առնուած եւ այլայլած կը թուի։

«Յետ բարեբախտագոյն Վաղիսի պատերազմաւ Գոթացն յաղթութեամբ դարձի, և նոյն հետայն առաքեալ զօրս ի Միջագետս եւ ի Հայս՝ յաղագս տուելոյ զօրուն յօգնականութիւն Շապհոյ»։

Ապա տեսեալ Արշակայ, թէ թշնամի են

նորա Շապուհ եւ Վաղէս եւ իւր. նախարարքն, տարակուսեալ յամենեցունց՝ յղէ բազում անգամ աղաչելով զՄեծն Ներսէս. խոստանայր դառնալ յամենայն ճանապարհաց չարաց, և լինել ըստ կամաց նորա, և ապաշխարել ի քուրձ և ի մոխիր. միայն զի նա եկեսցէ, և արասցէ խաղաղութիւն, և թափեսցէ զնա ի ձեռաց հզօրացն Յունաց։ Սապէս և ի նախարարացն ստէպ ստէպ զխիմեանց զկէի գային մաղթանք նորին աղագաւ. նա եւ եպիսկոպոսացն ժողովեալ, պաղատանս մատուցանէին, զի մի՛ անփոյթ զկորստենէ իւրոյ վիճակին առնիցէ։

«Ապա հաւանեալ Մեծն Ներսէս եկն ի մէջ նոցա, և արար խաղաղութիւն, լսելով նմա թագաւորին եւ նախարարացն, բայց ի նահապետէն Արծրունեաց Մերուժանայ և ի նորին քեռանէ Վահանայ Մամիկոնենէ, որք անլսող եղեալ՝ ապստամբեալ գնացին առ Շապուհ։ Իսկ այլ ամենայն նախարարքն հաստատեցին ուխտ, զի յանյմհետէ թագաւորն վարեսցի ուղղութեամբ, և նոքա ծառայեսցեն միամտութեամբ. և այս ի մէջ նոցա։ Բայց և առ զօրսն Յունաց երթեալ Մեծին Ներսիսի, աղաչէր մի ինչ աշխարհիս մեղանչել, այլ առնուլ զհարկսն և զորդի Արշակայ զՊապ հանդերձ ամենայն նախարարացն որդւովք պատանդս, և դառնալ։ Որում լսող եղեալ Քաղցըր եւ մեծն Թէոդոս զօրավարն, դառնայ առ կայսրն հանդերձ պատանդօքն, ընդ իւր տանելով

*զՄեծն Ներսէս Թղթով Արշակայ, որ ունէր օ-րինակ զայս։*

## Թուղթ Արշակայ առ Վաղէս

*«Արշակ արքայ Հայոց մեծաց և ամենայն նախարարք Արամեան ազինս, տեառն մերում ինքնակալի Վաղեսի Աւգոստոսի, և որդւոյ քում Գրատիանոսի խնդալ։*

*«Մի դիցէ ինքնակալդ ի մտի, եթէ առ ատել զձեզ նշկահեցաք, կամ իբրև զհզօրս ինչ զմեզ վարկանելով արձակեցաք զունդ հինից յերկիրդ Յունաց. այլ մեծի խռովութեանդ, որ ի ձերում միջի շարժեցաւ, գիտակ եղեալ, երկուցեալ ի Շապհոյ, եթէ ոչ ոք թափէ զմեզ ի ձեռաց նորա, օգնեցաք նմա գոյզն գնդաւ։ Այլ ոչ ես ինքն Արշակ եկի ընդ նմա, զմիաբանութիւն ընդ ձեզ պահելով. վասն որոյ աւերեալ գերեաց զաշխարհս մեր, մինչև զոսկերս անգամ հարցն բերեաց ի գերեզմանաց։ Եւ արդ հաւատացեալ ձեր՝ մեր յղելոցս, զառաջին սէրն առ մեզ հաստատուն պահեցէք, և մեք առ ձեզ զմտերիմ հաստուցուք ծառայութիւն։*

*«Իսկ Վաղէս ոչ զթուղթն ընթերցեալ, և ոչ ետես զՄեծն Ներսէս, այլ բացէ ի բաց արտասահմանել հրամայէ զնա, և զամենայն վտարանդիսն արոյ մատնել*»։*

(*) Խոր. գլ. ԻԱ. ԻԹ:

Խորենացւոյ գրածին նայելով՝ Արշակ երկչոտ, վարանամիտ, ստորին նկարագրի տէր անձ մ'էր, խաղալիկ իւր նախարարաց, Շապհոյ եւ Յունաց արքայից․ մինչդեռ Արշակայ իրական պատկերն բոլորովին տարբեր է։

Արշակ իւր զօրութեան գիտակցութիւնն ունէր, գիտէր որ ինքն կը գտնուէր ի գլուխ այնպիսի ազգի մը՝ որ կարող էր անկախ մնալ՝ եթէ միայն ուզէր, եթէ իւր արքային հետ միաբանէին անոր անմիտ նախարարներն․ ասոր համար ինքը բանի տեղ չէր դնէր ոչ Յունաց խոստանքը և ոչ Շապհոյ ատելութիւնը։ Խորենացին ինքն իրեն հետ հակասութեան մէջ կը գտնուի՝ հաստատելով մեր այս կարծիքը։

Վաղենտիանոս կայսրն Արշակայ թուղթ կը գրէ խնդրելու որ Հռովմայեցւոց հետ միաբան մնայ, Պարսիկներէն հեռանայ եւ անոնց դէմ մարտնչի ի պատեհ ժամու․ բաց աստի երկրին հարկն ալ խրկել կը պահանջէ։ Արշակ թղթոյն պատասխան անգամ չտար, կարհամարհէ զՀռովմայեցիս․ կը պարծենայ իւր քաջութեան եւ զօրութեան վրայ․ ահա Արշակայ իսկական նկարագիրն զոր կը հաստատեն Բուզանդ և նոյն իսկ Լատին պատմագիրը։

«Ինքնակալ Վաղենտիանոս Աւգոստոս, հանդերձ աթոռակցաւ մերով և թագակցաւ Վաղեսիւ կայսերաւ, Արշակայ Հայոց արքայի խնդալ։

«Պարտ էր քեզ յիշել զչարիսն, որ անցին

ընդ ձեզ յանաստուածիցն Պարսից, և զերախտիսն որ ի մէնջ ի վաղնջուց մինչև ցձեզ*, և հեռացեալ ի նոցանէ և մօտեալ ի մեզ: Որպէսզի խառնեալ ընդ զօրս մեր՝ մարտիցես ընդ նոսա, և հանդերձ գոհացողական թղթովք մերոց զօրավարացդ առաքեսցես զհարկս աշխարհիդ, և առեալ զեղբայրս քո, և որ ընդ սոսա վտարանդիքս ի բաց ածցես։ Ողջ լեր անձնային հնազանդութեամբ Հռովմայեցւոց տէրութեանս։

«Իսկ Արշակ և ոչ պատասխանի առնէ թղթոյն, այլ նշկահեալ արհամարհեաց զնոսա, նա և ոչ զհետ Շապհոյ միտեցաւ անձնային արտի, այլ անձնահաճ եղեալ, պարծելով համապազ ի գինարբուս և յերգս վարձակաց. քաջ և արի երևեալ քան զԱքիլլէս, իսկ արդեամբք Թերսիտեայ նմանեալ կաղի և կորագլխոյ. վտարանդեալ յիւրոց նախագլխոյն, մինչև զանքարտաւանութեանն ընկալաւ վարձս**»։

Արշակ իբրև խորագէտ իմաստուն իշխան՝ չէր ուզեր իւր ազգին զօրութիւնն տկարացնել՝ միջամտելով երկու մեծ ոսոխներու կռուին՝ որք տարիներէ ի վեր իրար կը բզկտէին Արևելեան հարուստ երկրաց աւարին վրայ՝ որոց կարգէն էր նաև Հայաստան. այլ կը դիտէր գոհունա-

---

(*) Աղիտաբեր երախտիք որ Հայոց անկման պատճառ եղան:

(**) Խոր. Գ. ԺԹ:

կութեամբ՝ որ այս երկու մրցողներուն զօրու-
թիւնը կ՚սպառէր իւրաքանչիւր նոր ընդհարմամբ՝
և այս՝ իւր ազգին անկախութեան մէկ գրաւա-
կանը կը համարէր իրաւամբ. անոր համար ար-
համարհեց ըստ Խորենացւոյ՝ Հռովմայեցիք եւ
բոլորով սրտիւ չմիտեցաւ զհետ Տապհոյ։ Ասկէ
աւելի չիրկարար, ասկէ աւելի հայրենասիրական
ուղղութեան չէր կրնար հետևիլ Արշակ։ Եւ երբ
Խորենացին՝ այս և նմանօրինակ առիթներու մէջ
միշտ կը հարուածէ իւր. բնիկ արքաները՝ Ար-
շակ և Պապ՝ իսկ անոնց ոխերիմ Հռովմայեցի զօ-
րապետներն կ՚անուանէ քաջեր, մեծ, յաղթող,
հզօր՝ մենք իրաւունք կուննենանք տարակուսելու
անոր հայրենասիրութեանը վրայ։

Արշակայ այս իմաստուն քաղաքականու-
թեան կը վկայէ նաև Բուզանդ։

«Եւ իբրև հաղ քան զհաղ յաւել լինել պա-
տերազմ (ընդ մէջ Պարսից և Յունաց), իսկ թա-
գաւորն Հայոց Արշակ զառաջինն ընդ միտս իւր
մեծամտեալ էր, եւ նայէր տեսանել՝ թէ ով ի
նոցանէն կոչեսցէ զնա ի թիկունս օգնականու-
թեան յաղագս գործոյ պատերազմին։ Ակն ու-
նէր, երթալ կամելով յօժարութեամբ ի թիկունս
կայսերն Յունաց. իսկ նոքա ոչ կոչեցին զնա,
եւ ոչ շուք ինչ եդին նմա եւ ոչ մեծարանս։

«Իսկ թագաւորն Պարսից Շապուհ յղէր առ
նա հրեշտակս խաղաղութեան. յուշ առնէր նմա
զառաջին երդումն, ասելով՝ եթէ կամ լիցի եղ-

քօր զի եկեսցես օգնեսցես ի գործ պատերազմիս, զի ի թիկունս հասցես քո գնդաւդ։ Ասէ. թէ դու ի մեր կոյս լինիս, գիտեմք զի մեր լինելոց է յաղթութիւնն * »։

Ահա ուրեմն Արշակ ճիշդ ինչպէս որ էր, պատկառելի Պարսից և Յունաց։ Սխալ է Բուզանդայ ըսածը թէ՝ Յոյնք անոր օգնութիւնը չխնդրեցին ընդդէմ Պարսից և անոր պատիւ չըրին։ Ընդհակառակն ամեն անգամ որ Հռովմայեցի բանակ մը Պարսից դէմ գնաց՝ գրեթէ միշտ կարօտ եղաւ Հայոց օգնութեան՝ մանաւանդ Արշակայ ժամանակ. Յուլիանոս խրոխտ կայսեր նամակն առ Արշակ՝ որ քիչ վերջ պիտի տեսնուի՝ լիովին կը ջրէ Բուզանդայ այս ենթադրութիւնը։

7. Արշակ զօրաւոր նկարագրի և վարչական ու ռազմագիտական մեծ տաղանդի տէր իշխան ըլլալով՝ ուզեց կառավարել իր տէրութիւնը անկախ նախարարական և կղերական ազդեցութենէ։ Նա Տրդատայ եւ անոր Խոսրով որդւոյն պէս չուզեց կաթողիկոսաց ուղղութեամբը վարել ազգը և կերպով մը կաթողիկոսին խնամակալութեան տակ մնալ. ա՛յս է գուցէ իրեն դէմ եղած ատելութեան պատճառը՝ որ դուրս կը ցայտէ Խորենացւոյ Արշակայ վրայ գրած ամեն

(*) Բուզ. դպր. Դ. գլ. Ի։.

մէկ տողէն. այս պատճառաւ է որ Բուզանդ ալ զայն կը դատափետէ յանիրաւի՝ մինչդեռ զԽոսրով Բ. քաջ արանց, աշխարհաշէնն Խոսրով, կանուանէ՝ զի սա մեծին Վրթանեսի հրամանէն բնաւ դուրս չէր ելնէր, այն Խոսրով՝ որ թոյլ իշխան մ'էր և որոյ ամբողջ աշխարհաշինութիւնն է կաղնեաց անտառ մը տնկելը:

Միայն մեր պատմութիւնը չէ՝ որ կրօնական տեսակէտով նկատուած է յաճախ՝ և որով շատ ճշմարտութիւններ ի բաց թողուած են։ Հին աստուածպետական իշխանութեան պահանջումն էր այս՝ որ կրօնական այլ և այլ ձևերու տակ միշտ ձգտեցաւ աշխարհի տիրապետութեան յանուն Աստուծոյ։

Կրօնի եւ քաղաքականութեան միացումը, ուրիշ բացատրութեամբ՝ եկեղեցւոյ և պետութեան միութիւնը քրիստոնեայ ազգաց մէջ, եւ որոյ զատուցումը մեր դարուն ընկերական մեծ խնդիրներէն մին է՝ պատճառ եղած է հին և նոր աշխարհի արհաւրաց շատերուն։

Ասիոյ մէջ՝ նախ քան զքրիստոնէութիւն՝ թագաւորն կրօնական իշխանութիւնն իւր ձեռաց մէջ կեդրոնացուցեր էր՝ և որդի Աստուծոյ կանուանէր իւր անձը՝ ժողովուրդը լաւ ևս նուաճելու համար՝ և թոյլ չտալու որ քուրմերը արքային հակառակամարտ ազդեցութիւն բանեցնեն ժողովուրդին վրայ։

Հին Յունաստանի եւ Հռովմայ մէջ Ասիոյ

աստուածպետական իշխանութիւնը չկար. ժողովուրդը ճակատագրի օրէնքը կը ճանաչէր գերագոյն կարգադրող մարդկային գործոց. քուրմը ոչ մասնաւոր ազդեցութիւն ունէր ժողովուրդին վրայ՝ և ոչ առանձնաշնորհեալ դասակարգ մը կը կազմէր։

Այսպէս յԱսիա չկար ժողովուրդ՝ այլ միայն կրօնապետ իշխան. յԵւրոպա չկար կրօնք որոշ ձևի մը ներքև՝ այլ ժողովրդեան ազատ, բեղմնաւոր երևակայութեան զանազան պատկերներու ցոլացումը։

Քրիստոնէական կրօնը աստուածպետական իշխանութեան սկզբունքը իւրացուց հակառակ իւր երկնաւոր հիմնադրին կամաց՝ որ կըսէր թէ իմ թագաւորութիւնս այս աշխարհի վրայ չէ։ Եկեղեցւոյ վարդապետներն ուզեցին իշխել՝ եւ թագաւորներուն վրայ խնամակալի պաշտօն ի գործ դնել։

Յուսիկ կաթողիկոս կը վռնտէ հանդիսաւոր օր մը զՏիրան թագաւորն արքունական եկեղեցւոյ դռնէն, զի արքայն՝ ըստ մեր պատմագրաց՝ աղէկ վարք չունէր եղեր, եւ նախարարութիւններն ջնջել ձեռնարկեր է*։

Թագաւորը զայրանալով՝ իւր անձին և աստիճանին այսպէս հրապարակաւ եղած թշնաման-

(*) Այս վերջին ամբաստանութիւնը մեծ պատիւ է Տիրանայ։

քին վրայ՝ կը հրամայէ գանակոծել զկաթողիկոսն՝ որ ծեծին հետեւանքէն կը վախճանի։ Հոս որո՞ւ-քով է յանցանքը։

«Իբրեւ օր մի յաւուրց տարեկան դիմեաց գալ թագաւորն Տիրան հանդերձ այլովք աւագանւովն մտանել յեկեղեցին. իսկ նա (Յուսիկ) ընդդէմ բառբառեալ ասէր. Չես արժանի, հի՞մ գաս, մի՛ գար ի ներքս։ Վասն որոյ անդէն ի ներքս քարշէին զնա յեկեղեցւոյն. բրածեծ եղեալ ջախջախեալ քահանայապետն Աստուծոյ սուրբ, երանելի մանուկն Յուսիկ կիսամահ կոչկոճեալ ընկեցեալ լինէր։ Զոր բարձեալ պաշտօնէիցն դրան եկեղեցւոյն ի բնաբերդէն արքունի՝ մեծ Ծոփաց գաւառին՝ եկին բերին ի գաւառն Դարանաղեաց ի գեւղն Թորդան։ Եւ անդ ոչ ինչ յետ բազում աւուրց հանգեաւ, և եդաւ մօտ առ Գրիգորի և ընդ հարս իւր*»։

«Արդ հասեալ Տիրանայ ի գաւառն Ծոփաց յերում արքունական եկեղեցւոյն կամեցաւ կանգնել զպատկերն (Յուլիանոսի) զոր յափշտակեալ սրբոյ Յուսկանն եհանն ի ձեռաց արքային, և ընկեցեալ յերկիր կոխեալ մանրեաց....

Եւ (Տիրան) յաւելեալ ի բորբոքումն չարութեանն՝ զոր ունէր ընդ սրբոյ Յուսկանն յաղագս համապատշաճ յանդիմանութեանն իւրոյ յանցանաց, հրամայեաց Ջաղոտիւք հարկանել յեր-

(*) Բուզ. դպր. Գ. գլ. ԺԲ:

կար, մինչ ի գանելն աւանդեաց զոգին (*)»։

Հարկ չէ ըսել որ այս երկու գրուածներէն Խորենացւոյն բոլորովին չինծու է՝ և զրպարտութիւն՝ Տիրանայ յիշատակն անարգելու համար յօրինուած. զի հիմա ապացուցուած է որ Յուլիանոս ժամանակակից չէ Տիրանայ՝ այլ անոր Արշակ որդւոյն՝ ինչպէս որ պիտի տեսնուի յետոյ։

Եւրոպայի մէջ կրօնական բռնապետութիւնն առաւել ահարկու էր. հոն կայսրեր և կայսրութիւններ կը սասանէին եկեղեցւոյ պետին ակնարկէն եւ անոր շրթունքէն կախուած էր շատ անգամ իշխանաց մահը և կեանքը։

Գերմանիոյ Հենրիկոս Դ. կայսրը ուզելով միջամտել կղերականաց պաշտօնին վաւերացման՝ կը բանադրուի Գրիգոր Է. Պապէն։ Կայսեր իշխանք կ'ըսեն որ եթէ մինչեւ մէկ տարի արձակում չ'ընդունի Պապէն՝ գահընկէց պիտի ըլլայ։ Հենրիկոս ձմեռ ատեն մեծ տառապանօք ճամբորդեց իր կնոջ և երեք տարեկան տղեկին հետ, անցաւ ձիւնապատ լեռներէ եւ ձորերէ, գնաց Իտալիա, երեք օր Քանոսա դղեկին առջեւ սառեցաւ սարսռաց սպասէն՝ մինչեւ որ Պապը բարեհաճեցաւ ներել անոր։ Ո՛վ ժամանակներ։

Արշակայ վրայ գրուած յանցանքները կրօնական չափազանց նախանձայուզութեան եւ ար-

(*) Խոր. Գ. ԺԳ:

քայլին իշխանութեան թշնամի ապստամբներու յօրինած զուտ բարուրանքներն են։

8. Եւ ի՞նչ են այդ յանցանքները որ բաւական եղած են այս աստիճան արհամարհել տալու այս քաջ զինուորին անունը.— Վարուց անմաքրութիւնը, Արշակաւանի շինութիւնը, Գնելի սպանումը, նախարարաց կոտորածը և ամենէն սոսկալին հայրասպանութիւնը։ Տեսնենք թէ ինչ կարեւորութիւն ունին այս ամբաստանութիւնները։

Վարուց համար կըսէ Բուզանդ.

«Զայնու ժամանակաւ Արշակ արքայ Հայոց ոչ ինչ կարի ի ճանապարհ Աստուծոյ գնացեալ լինէր, զի որչափ ի մատաղութեանն հասակին ըստ աստուածայինն իմաստութեանն գնացեալ լինէր, նոյնչափ յաւագութեանն ի չարութեան ի շաղաշատութեան հասաւ. զոր սուրբ հովիւն Խադ* բազում անգամ յանդիմանեալ կշտամբէր, որում ոչինչ անսացեալ լինէր**»։

Պատմական ամենամեծ անձնաւորութիւններ՝ հին և նոր աշխարհաց մէջ՝ շատ անգամ այլանդակ խմոր մ'եղած են մոլութեանց և առաքինութեանց. ժողովուրդներ դատապարտելով անոնց թերութիւնները՝ չեն մոռցած անոնց ծա-

(*) Մեծին Ներսէսի ձեռնասունը եւ փոխանորդը։

(**) Բուզ դպր. Դ. գլ. ԺԲ։

ռայութիւններ, եւ շատ անգամ անոնց մոլութեանց վրայ քօղ մը ձգած են՝ առաքինութիւններն միայն պանծացնելով։

Եւ ստուգիւ չափազանց խստիւ դատել է Արշակ՝ զայն Աստուծոյ ճամբէն ելած կարծելը՝ որովհետեւ լկութիւն և շաղաշատութիւն (ցոփութիւն) կընէ եղեր։

Արշակայ երկրորդ յանցանքն է Արշակաւանի շինութիւնը։ Արշակ քաջ հասկցած էր թէ նախարարաց ըմբոստութիւնը և հայրենեաց ընդհանուր շահուն մասին անոնց ցուցած անտարբերութիւնը՝ որ հետեւանք էր անոնց անմտութեան և կէս անկախ վիճակին՝ պիտի կործանէին մեր երկիրը. բայց աստի՝ նախարարները շարունակ դաւ կը նիւթէին արքայական իշխանութեան դէմ. ուստի խորհեցաւ այս վտանգաւոր դասուն դէմ արքայական իշխանութեան յենարաններն աւելցնել։ Ահա այս մտօք շինեց Արտագերս անառիկ ամրոցը՝ Արշարունեաց գաւառին մէջ՝ եւ Արշակաւան քաղաքը՝ Մասեաց կոնակը։

Արշակաւանայ շինութեան եւ կործանման վրայ պատմուածները բոլորն ալ հակասական առասպելներ են։ Բուզանդ և Խորենացին իրարմէ շատ տարբեր կը պատմեն այս քաղաքին վէպը, աստի կը տեսնուի որ մասնաւոր դիտում կայ Արշակայ գործը դատապարտելու և ճշմարտութիւնը քօղարկելու։

Սա միայն ստոյգ կերևի թէ Արշակ ուզեց այս քաղաքը իւր զինուորական զօրութեան կեդրոնն ընել. ուստի հրաւէր կարդաց անպատսպար մարդոց և մասնաւորապէս երիտասարդաց՝ գալ հոն բնակիլ։ Տարակոյս չկայ թէ մասնաւոր դիւրութիւններ եւ առանձնաշնորհութիւններ ալ խոստացաւ արքայական ոստանին բնակչաց։ Ահա այս կերևի բուն իրողութիւնը՝ որ ըստ ինքեան դատապարտելի չըլլալէ զատ՝ մեծ գովեստի արժանի է։

Մեծ քաղաքի մը մէջ՝ մանաւանդ երբ այն նորակառոյց է՝ կրնան գտնուիլ ամեն տեսակ մարդիկ, գողեր, սպաննողներ, յափշտակողներ ևւն. սակայն ասոր չհետևիր թէ այս չարութիւնք արքային հրամանաւ կը գործուին։ Այս տեսակ առասպելներ շատ մեծ քաղաքաց ծագման վրայ կարկտուած են։ Հռովմ՝ տիեզերաց թագուհին՝ ճիշտ Արշակաւանի պէս չինուեցաւ կ՚ըսեն։ Նինուէ, Բաբելոն, Սիդոն և Տիւրոս պիղծ քաղաքները՝ հին աշխարհին քաղաքակրթութեան սուրբ վայրերն են՝ ուր ուխտի կերթան տակաւին մեր ժամանակի մեծ գիտունք՝ և անոնց խորհրդաւոր աւերակներուն հարցումներ կ՚ուղղեն մարդկային կենաց գաղտնիքին վրայ։

Արշակաւանի վնասակարութեան առասպելը կը հերքուի Արշակայ գլխաւոր պատմագրին Բուզանդայ խօսքերովն իսկ՝ որ անշուշտ Արշակայ արդարացուցման համար հնարուած չեն։

Այսպէս Բուզանդ կը պատմէ թէ Արշակ եկեղեցի ալ շինել էր հոն և թէ՝ շատ անգամ կաթողիկէին զԽադ՝ Մծբին Ներսէսի փոխանորդը որ գայ եկեղեցին օրհնէ. իսկ Խադ կը մերժէր, և կը յանդիմանէր կը կշտամբէր զԱրշակ և զամենայն մեծամեծս եւ զիշխանս՝ որ այս առաջարկութիւնը իրեն կընէին։ Ապա ուրեմն ազգին ամենայն մեծամեծները, իշխանները, և հետևաբար ազգը կամակից են եղեր արքային. ապա ուրեմն սուտ է թէ՝ ընդհանուր անիրաւութեան, անառակութեան և պղծութեան տեղի էր Արշակաւան և թէ՝ նախարարները ու ազգը դէմ էին անոր շինութեանն՝ անոր համար պայն կործանեցին։

Արշակաւանայ աւերը Բուզանդ կ'ընծայէ ժանտախտի պէս հիւանդութեան մը՝ որ երեք օրուան մէջ անմարդի կ'ընէ նորակերտ քաղաքը։

«Զայնու ժամանակաւ շինեաց իւր արքայն դաստակերտ մի ի հովիտն անուանեալ ի Կողդաւառի։ Եւ ետ հրաման ընդ ամենայն գաւառս իշխանութեան իւրոյ, և հրամայեաց կարդել քարոզ ընդ ամենայն տեղիս աշխարհացն հրապարակին իւրոյ, և ամենայն կողմանս գաւառաց իւրոց լի առնէր հրամանաւն արքունի, զի եթէ ոք ումեք ինչ պարտիցի, եթէ ոք ուրուք ուստեք ինչ վնասեալ իցէ, կամ ոք ումեք ինչ դատ պարտիցի, ամենեքեան եկեսցեն ի դաստակերտն շինեսցին։ Եթէ արիւնապարտ ոք իցէ, կամ վնաս ու-

րուք աշարեալ իցէ,* կամ զկին ուրուք տարեալ իցէ,** կամ պարտապան իցէ, կամ ոք զուրուք կարասի ունիցի, կամ ոք յումեքէ երկիւղած ինչ իցէ, և եկեսցէ յայն տեղի, դատ և իրաւունք մի լիցին։ Իսկ եթէ ոք ումեք ինչ պարտիցի և որում պարտիցին, եկեալ յայն տեղին՝ առանց դատի և իրաւանց կալցին և ի դուրս տարցեն։»

«Իբրև եւ հրաման յարքայէն, ժողովեցան այնուհետև յայն տեղի ամենայն գողք և աւազակք, արիւնահանք, սպանողք, սուտք և մարդեղոյզք, փաստակարք, գանձահատք, զրկողք, ստադատք, զրախօսք, դերփողք, յափշտակողք, ժլատք։ Բազում փասս առնէին և անդր անկանէին. բազում կանայք զայրս թողուին և անդր անկանէին. բազում արք զիւրեանց կանայս թողուին, և զայլոյ կանայս առեալ՝ անդր անկանէին. բազում ծառայք զիւրեանց տերանց զգանձս ըմբռնեալ, փախուցեալք անդր անկանէին. բազում աւանդառուք զաւանդս լի զպահեստս բարձեալ, անդ անկանէին. գերփէին, աւերէին զերկիրն ամենայն։ Զի թէպէտ և կարի յոյժ բազմացաւ աղաղակն, դատ չկայր, և իրաւունք

(*) Դիտելու արժան է այս կրկնութիւնները որ փաստի պակասութեան հետեւանք են սովորաբար:

(**) Կա՞յ յիմար մը որ հաւատայ թէ թագաւոր մը կրնայ այսպէս հրամայել:

*ումեք յարքունուստ ոչ եւլանէին։ Վասն այսորիկ ամենայն մարդ հառաչելով վայէին. և ասէին ի հաւանել բանիցն իւրեանց. այս բանք ըստ այսմ օրինակի պաշտէին, առ հասարակ ամենեցուն ասելով՝ թէ իրաւունք մեռան, և վասն այնորիկ ոչ գտանէին, այլ թէ էր, և կորուսեալ էին, ուր եւ էր ջանայաք խնդրէաք գտանէաք*»։*

*«Իսկ տեղին աւանանայր, քաղաքանայր. մեծացաւ, բազմացաւ և ելից զհովիտն ամենայն։ Ապա տայր հրաման արքայն Արշակ դնել անուն դաստակերտին յիւրակից անունն Արշակաւան և շինեցին նոսա անդ ապարանս արքունի։ Եւ յայնմհետէ ոչինչ երկնչէին ի տեառնէ ամենեւին. և ամենայն մարդ գրկեալ էր իրօքն այնոքիւք, և բազմաց կառաչ աղաղակի արտնջելոյն յաճախեալ բազմանայր։ Վասն որոյ բազում անգամ ընդդիմանայր նմա և յանդիմանէր սուրբն Խադ եպիսկոպոսն. մանաւանդ յորժամ ստիպէին զնա թէ եկ ուղղեա սեղան յեկեղեցւոջն յաւանն յԱրշակաւանն։ Իսկ նա բազում անգամ կշտամբէր և յանդիմանէր զթագաւորն Արշակ և զամենայն մեծամեծս եւ զիշխանս**։ Բայց ես ասէ, եսե-*

---

(*) Բոլորն ալ անիմաստ խօսքեր, տղայական կից կցուր բառուրանքներ, որոյ մէջ ո՛չ տրամաբանութիւն կայ ոչ իրականութիւն:

(**) Զարմանալի չէ՞ որ *անեծներուն Աստուծմէ*

ղապահ եմ. և ոչինչ առանց այնորիկ, որ թողն զիս հայրն, ունիմ իշխանութիւն գործել ինչ։ Ապա կամեցեալ Արշակ թագաւորն պատուաւ և ագահութեամբ կարասոյն մեքենայիւ խաբել զսուրբ եպիսկոպոսն Խադ, բազում ոսկի և բազում գանձս արծաթոյ և բազում նժոյգս զարքունական ձիոյ՝ արքունի օճառովք, ոսկիվարաւանդ ապրդմոփք, տայր նմա. պատրել հաճել զմիտս նորա, յինքն յանգուցանել։ Իսկ նա զկարասին, զոր առնոյր յարքայէն, յանդիման նորա աղքատաց բաշխէր. և զյանդիմանութիւնն ոչ ինչ թուլացուցանէր, մինչև հրամանն տայր հալածել զեպիսկոպոսն Խադ ի բանակէ անտի»։

Վերջապէս կաթողիկոսն կը դառնայ աքսորէն, կիմանայ իւր տեղապահ Խադ եպիսկոպոսէն Արշակաւանայ շինութիւնը, կը խրատէ զԱրշակ քակել նորաշէն ոստանը, թագաւորը մտիկ չըներ. Մեծն Ներսէս կանիծէ այս շէնքը. և ահա երեք օրէն ժանտամահով կամայանայ քաղաքը։

---

չվախցող, գող, աւազակ, կնահան, մարդասպան, արիւնահան, մարդեղոյզ, սուտ, յափշտակող, գերփող մարդոցմով լի քաղաքի մը հեղինակն՝ Արշակ այսչափ կարեւորութիւն կուտայ եկեղեցւոյ՝ եւ զայն օրհնել տալու համար կը յանդիմանուի, կը կշտամբուի եպիսկոպոսէ մը, ու դարձեալ չյուսահատիր՝ անոր մեծամեծ պարգեւներ, զանձեր կուտայ՝ անոր միտքը հանելու համար: Բոլոր ասոնք տղայական չե՞ն. լուրջ միտք մը կ'ընդունի՞ այսպիսի կարկատուն առասպելներն իրական պատմութեան տեղ:

*«Ապա սուրբ Հայրապետն Ներսէս մտանէր առ Թագաւորն. խօսէր ընդ նմա և ասէր՝ եթէ ընդէ՞ր մոռացար զտէր, և թողեր զպատուիրանս նորա, զարարիչն՝ որ զամենայն յոչնչէ արար, որ հայրն է որբոց և դատաւոր այրեաց, որ վասն մեր էջ յաղքատութիւնս, որ ոչ թողու զաղքատս ի ձեռանէ, այլ իւրով մարդասիրութեամբն բուծանէ զնոսա, այլ Աստուած դատաւոր արդար և հզօր և երկայնամիտ՝ որ ամենայն տառապելոց ունկնդիր է, և զարհամարհանս ուրուք յանձն ոչ առնու։ Եւ զի՞րդ կամ ի՞ւ դու ըմբռնեցար արհամարհել զնորա պատուիրանսն. ո՞չ հայր քո վասն այսր ամբարշտութեան ի կորուստ մատնեցաւ։ Արդ դու տակաւին չյիշեցիր զնա որ ոչն յիշեաց զմեղս հօրն քո, և ետ քեզ զտեղի ունել, այս ինքն զաթոռ և զթագ հօրն քո. և սկսար անօրինել առաջի տեառնն Աստուծոյ քո, և զամբարշտութիւնս և զանօրէնութիւնս կարի ի նմանութիւն Սոդոմացւոցն՝ պարծանօք յայտնապէս պատմել*։ Եւ երկիր առ հասարակ լան և ձայնեն զրկութեանցն զյափշտակութեանցն, որովք դու կամեցար մեծանալ. և ոչ յագեցոյց զքեզ մեծ՝ և բազում թագաւորութեանցն յղփութիւնքն, զոր ետն քեզ տէր ամենայնի Քրիստոս։*

---

**(*) Մարդ շատ պարզամիտ ըլլալու է՝ որ հաւատայ թէ՝ Արշակայ նման խիստ եւ սեգ բնաւորութիւն ունեցող թագաւոր մը այս խօսքեր լսած եւ համբերած ըլլայ:**

«Արդ լուր ինձ զոր ասեմս քեզ և արա զնա՝ զի մարթասցես շահել զանձն քո, և ապրեցուցանել զքեզ ի բարկութենէ անտի Աստուծոյ, և մի թշուառական աշխարհս Հայոց յաղագս քո կորիցէ։ Այլ ես տեսի տեսիլ, զի կորուստ և քանդումն յուզեալ խաղացեալ գայ ի վերայ կորըստական աշխարհիս Հայոց այսոցիկ։ Արդ հրաման տուր ի բաց քակել զտեղին զայն, և ցրուեա զմարդիկն՝ զոր ժողովեցեր, զի երթիցեն ցրուեսցին սփռեսցին յիւրաքանչիւր տեղիս, և երթիցեն տացեն իրաւունս ում զինչ և պարտիցին. զի մի դու ի խորս չարեաց բարկութեանն անգանիցիս կորիցես։ Եւ վասն մեղացն՝ զոր գործեցեր, հրաման տացուք ամենայն աշխարհի՝ ընդ քո ի պահս՞ և ի խնդրուածս լինել և մեք հանդերձ քեւ յապաշխարութիւն մտցուք. ո՛ գիտէ, թողու տէր զքո զայդ զանհնարին զմեղսդ գործեալ։ Եթէ տեղւոյն ինչ կարէ այդչափ ցանկացեալ ես, ես ինքն ինձէն զնա արդարութեամբ շինեցից, և չէն կալայց առաջի քո։

«Իսկ Թագաւորն ծաղր առնէր զբանսն կաթողիկոսին, և մկթայր զնորա զասացելովքն։ Իսկ նա միւս անգամ բարկացեալ, կրկնեալ ասէ. Գիտես ո՛վ Թագաւոր. վասն այսր ամենայնի ասացեալ է կանխասացութեամբն ամենայն բերանովք մարգարէիցն, եթէ «վա՛յ որ շինէ զտուն իւր՝ և ոչ արդարութեամբ, և զվերնայարկս իւր՝ և ոչ իրաւամբք» եթէ «յառակ առցեն ողբքն,» և

ասացեն՝ եթէ վա՛յ որ ագահեսցէ զագահութիւն անձին իւրում, որ ոչ է իւր, զի եթէ տունք գեղեցիկ իցեն և մեծամեծք իցեն, սակայն յաւեր դարձցին. զի մի՛ ոք բնակիցէ ի նոսա մարդ, այլ ճարակ հօտից լիցի, և դատարք գազանաց և որջք բորենից և ճագարաց և աղուեսուց, բոյն խորդոց և ագռաւուց, և անդք սահմանակցաց. վասն այդորիկ աւերեսցին գործք ձեռաց քոց և մի շինեսցին, և միանգամայն սատակեսցին ամենայն անօրէնքն բնակեալքն ի նմա. և եղիցին դադարք եզանց և ճարակք ցռոց և աղուէսք մուտ և ելս խաղասցեն յարկս նոցին. և մի՛ շինեսցին, և մի՛ ևս բնակեսցեն, մինչև ցյաւիտեան»։

«Եւ զայս ամենայն խօսեցաւ հայրապետն Ներսէս, և գնացեալ ի Թագաւորէն ելեալ շրջէր ընդ գաւառս գաւառս աշակերտութեանն՝ ուղղել կարգել և հաստատել զեկեղեցիսն յամենայն գաւառս Հայոց։ Եւ յետ երից աւուրց անցանելոյ բանիցն ասացելոց ի վերայ, որ խօսեցեալ եղեն ի բերանոյն երանելոյն Ներսիսի, մատնեաց տէր զգեղաքաղաքն զԱրշակաւանն ի ձեռս հարուածոցն։ Եւ սկսաւ հատանել զոր չարակեղն իմն կոչեն, իսկ կէսքն ժանտ անուանեն. ելանէր ի վերայ մարդկանն և անասնոցն։ Ոչ աւելի եղև հարուածոցն ի վերայ նոցա քան զերիս աւուրս յերկարեցաւ, զի անմարդացաւ քան զքսան հազարք սատակեցան երդք մարդկան,

ոչ մնաց ի նոցանէ և ոչ մի. զի առ հասարակ սատակեցան կոտորեցան յանկարծօրէն քանդեցան. զի միահաղոյն եկն սատակումն ի վերայ նոցա*։

Իսկ Խորենացին բոլորովին տարբեր կերպով կը պատմէ այս հռչակաւոր քաղաքին աւերը։

«Բայց Արշակ ևս ժպրհեցաւ առնել գործ անմտութեան։ Ի Թիկանց կուսէ լերին Մասեաց շինեաց ձեռակերտ, ժողով մարդկան մեղաւորաց. և ետ հրաման, որ ոք անկեալ անդր բնակեսցէ, մի լիցի ի վերայ նորա իրաւունք դատաստանի։ Եւ նոյն ժամայն ծովացեալ լցաւ մարդկութեամբ հովիտն ամենայն. քանզի աւանդառուք և պարտականք և ծառայք և խասակարք և գողք և սպանողք և կնահանք, և այլք այսպիսիք փախուցեալք անդր անկանէին. և ոչ կայր նոցա այց և խնդիր։

«Եւ բազում անգամ բողոքեաց Նախարարացն, և ոչինչ լուաւ նոցա Արշակ. մինչև առ Շապուհ ևս ունել նոցա բողոք**։ Եւ եղեւ ի դառնալն Շապհոյ ի Յունաց, առաքեաց զմի ի սպարապետաց իւրոց և հայ գունդ ընդ նմա, թէ դէպ լինի ունել զԱրշակ, և նա խոյս ետ ի

(*) Բուզ. դպր. Դ. գլ. ԺԱ. ԺԲ:

(**) Արշակ այն ժամանակ Պարսից գերիշխանութիւնը չէր ճանչէր, ի՞նչպէս կ'ըլլայ որ Նախարարները կը բողոքեն առ նա:

նոցանէ զկողմամբք Կաւկասու, Վրաց միաբանելով»։

«Եւ նախարարացն Հայոց ժողովեալ՝ դիմեցին ի վերայ արքունական ձեռակերտին Արշակաւանայ, եւ հարին զնա արով սուսերի յառնէ մինչեւ ցկին, բայց ի տղայոց ստնդիացաց. քանզի դառնացեալք էին իւրաքանչիւր ի վերայ ծառայից իւրոց և յանցաւորաց։ Զոր թէպէտ և վաղ գիտացեալ Մեծին Ներսիսի՝ ոչ յառաջ քան զկոտորելն ժամանեաց հասանել՝ այլ ի կատար գործոյն եգիտ բաժանեալ զտղայս կոտորելոցն, զի վարեսցեն ի գերութիւն որպէս զհեռաւոր թշնամեաց։ Զոր թափեալ Մեծին Ներսիսի, հրամայեաց կրել որթովք ի գոմ մի, և դարմանս՝ և սնուցողս նոցին կարգեալ. որք յետոյ աւանացեալ, անուանեցան Որթք այնորիկ ազգաւ*։

Այս աստիճան հիմնովին տարբերութիւն Բուզանդայ և Խորենացւոյ գրածին մէջ՝ ի մասին Արշակաւանայ աւերման՝ բոլորովին առասպելական կ՚ընեն այս քաղաքին վրայ պատմուածները։

Արշակայ մեծագոյն ոճիրներէն մին կը համարուի իւր եղբօրորդի Գնել պատանւոյն սպանումը։ Սակայն եթէ արդարութեամբ քննուի այս՝ Արշակ բոլորովին անպարտ կ՚ելնէ, զի կը

---

(*) Խոր. Գ. Իէ։

տեսնուի թէ՝ երկար համբերութենէ վերջ՝ Արշակ անձնապաշտպանութեան գործ մը կատարեր է։

Անյիշատակ ժամանակներէ ի վեր կառավարական օրէնք է որ արքային անձին դէմ դաւաճանութիւնը, երկրին հաստատեալ իշխանութեան դէմ ապստամբութեան փորձը՝ մահուամբ կը պատժուին։ Արդ Գնել ամբաստանուած էր այս ծանրագոյն ոճիրներով։

Ժամանակէ մ'ի վեր նախարարներ սկսած էին Արշակայ և Արշակունեաց իշխանութեան դէմ դաւեր նիւթել՝ և այս նպատակաւ զըրպարտութիւններ կընէին առ Շապուհ՝ որ Պարսից Արշակունեան ցեղապետութիւնն գահընկեց ընող Սասանեան մ'էր՝ ու միշտ կասկածանօք կը նայէր Հայ Արշակունի արքայից վրայ։ Այսպէս զՏիրան զրպարտեցին առ Շապուհ՝ թէ Յունաց զօրութեան ապաւինած՝ միտքը դրեր է Սասանեան ցեղապետութիւնը տապալել՝ և Արշակունի ցեղը վերահաստատել ի Պարսկաստան։

Արշակայ ժամանակ ալ հայր մարդպետը կը նախատէ զԱրշակունիս որ երկրին հարստութիւնը կանանցահանդերձ մարդոց (եկեղեցականաց) տուեր են։ Ուրիշ մարդպետ մը Արտագերս ամրոցը կը մտնէ գաղտնի՝ երբ Փառանձեմ տիկինը հոն պաշարուած էր՝ և կը թշնամանէ Արշակունիները որ երկիրը կործանեցին։ Նախարարները ստահակ և սանձարձակ մարդիկ՝ միայն իրենց շահը և հանգիստը կը խորհէին և պատրուակի

մը կսպասէին առ Շապուհ ապստամբելու։ Այս ամեն նշաններ կը ցուցնէին թէ նախարարներ մեծ խռովութիւն մը կը պատրաստէին։ Եւ ինչո՞ւ, Արշակայ թերութիւննե՞րէն զզուելով. ո՛չ երբէք, զի պատմութիւնը կը ցուցնէ թէ՝ նախարարաց ամենամեծ մասը գէղծ, մոլի, ստորին մարդիկ էին՝ և թէ մեր մոլի կարծուած թագաւորները՝ Տիրան, Արշակ և Պապ մի՛ միայն նախարարաց վատութեան զոհ գացեր են։

Արդ այս դաւաճան մարդիկ պատանին Գնել իրենց նպատակին գործիք ընել ուզեցին։ Գնել՝ հակառակ հայրենեաց օրինաց՝ կը բնակէր Այրարատ գաւառը։ Ասպա կամուսնանայ Փառանձեմ անուն գեղանի աղջկան հետ, թագաւորապէս հարսանիք կ'ընէ, նախարարներուն մեծամեծ պարգևներ կ'ուտայ, նախարարներ իրենց որդիները անոր կը յանձնեն և մասնաւոր մտերմութեամբ կը կապուին անոր հետ։ Բոլոր այս նշանները բաւական էին Արշակայ նախանձը գրգռելու և իրաւացի կասկածներ զարթուցանելու. սակայն Արշակ բնաւ դիտողութիւն չ'ըներ այս մասին Գնելայ։

Վարդան Մամիկոնեան և Տիրիթ՝ Արշակայ միւս եղբօրորդին՝ որք կերևի թէ արքայի մտերիմներն էին՝ երկար ատեն կ'աշխատին համոզել զԱրշակ որ զԳնել մէջտեղէն վերցնէ, ապա թէ ոչ ինքն անոր զոհ պիտի երթայ։ Ըստ Բուզանդայ՝ Տիրիթ այս քսութիւնն անոր համար միայն

ըրաւ՝ որպէս զի սպաննել տայ զԳնել՝ և անոր Փառանձեմ կինը՝ որուն գեղեցկութիւնը հռչակաւոր էր՝ իրեն կին առնու։ Արշակ վերջապէս տեղի տալով այս երկու քուներուն թախանձանաց՝ զպատանին Գնել սպաննել կուտայ։ Յակայն Գնել անմեղ էր և յանդէտս իրեն կ՚ընծայուէին նմա արքայապատուութեան և դաւաճանութեան խորհուրդներ։ Արշակ կիմանայ զայս՝ և սպաննել կուտայ նաև զՏիրիթ Գնելի մահուան գլխաւոր պատճառը՝ ու զՓառանձեմ՝ որուն աչք դրած էր Տիրիթ՝ իրեն կին կ՚առնու։ Ստոյգ է որ Մեծն Ներսէս իմանալով թէ Արշակ հրամայած է սպաննել զԳնել՝ վազեց եկաւ առ Արշակ և խնդրեց որ անսայ իրեն՝ և խնայէ իւր եղբօրորդւոյն. բայց Արշակ երբ մի անգամ համոզուէր բանի մը՝ այլևս անհնար էր դրեթէ զինքն ի բաց դարձնել անկէ. ուստի քնանալ ձևացուց և չլսել Մեծին Ներսիսի խնդիրքը, մինչև որ կաթողիկոսը իմանալով անբաղդ պատանւոյն ողորմ մահը՝ բարկութեամբ կը մեկնի արքայէն և կաթողիկոսական իշխանութենէն կը հրաժարի։

Այս է ահա Գնելի մահուան պատմութիւնը որուն մէջ Արշակ և Գնել՝ երկուքն ալ նախարարաց չար հնարից և պալատականաց խաբէութեան զոհ գացեր են։

Եւ սակայն ո՞ր մեծ արքայն ազատ մնացեր է չարերու լարած որոգայթէն։ Որ իշխան իւր գլխուն և թագին թշնամիներուն կամ այնպէս կարծուածներուն ներած է։

Եկեղեցին կը տօնէ զՄեծն Կոստանդիանոս ըսելով.

«Ո՜վ Կոստանդիանոս մեծ թագաւոր, վասն մեր բարեխօսեա առ Թագաւորն երկնաւոր»։ Եւ սակայն այն ձեռուըները՝ զորս Կոստանդիանոս յերկինս պիտի ամբառնայ բարեխօսելու վասն մեր՝ շաղախուած են արեամբ իւր Կրիսպոս որդւոյն, իւր Ֆաւսթա կայսրուհւոյն և Լիկինիոսի՝ երկոտասանամեայ անմեղ պատանեկին։

Արշակայ չարութեանց մին ևս է Նախարարաց կոտորումը։

Նախարարութիւնը որ Արեւելեան աւատական իշխանութիւնն էր՝ նոյնն չարիք գործեց յԱսիա, ինչ որ ըրաւ Արեւմտեան աւատականութիւնն յԵւրոպա, մինչև ինկաւ Լուի ԺԱ ի, Թիւտորներու և անոնց ժամանակակից իշխանաց հարուածին ներքև։

Յարեւմուտս աւատականութիւնը ծնած էր հին հասարակապետութեանց և մեծ կայսրութեանց աւերակներէն. իսկ յԱրեւելս նահապետական կազմութեան մնացորդն էր՝ որ մեծ տէրութեանց կազմակերպութեննէն վերջն իսկ տեւեց մնաց շատ երկիրներու մէջ։

Յեգիպտոս՝ Մենէս, ի Պարսկաստան՝ Մեծն Կիւրոս նուաճեցին մանր մունր իշխանները և կառավարական զօրաւոր կեդրոնական իշխանութիւն մը հաստատեցին։ Եւ որովհետև կրօնք՝ ի սկզբանէ անտի ժողովրդոց վարչութեան գլխա-

ւոր մէկ տարրն եղած է՝ Արևելեան մեծ միապետներ կրօնական իշխանութիւնն ալ իրենց անձին վրայ միացուցին։

Ի Հայաստան՝ թէպէտ կար կեդրոնական զօրութիւն՝ սակայն այնչափ լաւ կազմակերպուած չէր. արքայն ոչ այլ ինչ էր՝ բայց միայն ուրիշ նախարար մը։ Երկրին բոլոր հողերը բաժնուած էին նախարարաց և եկեղեցւոյ մէջ՝ ինչպէս էր միջին դարուն Եւրոպա։ Նախարարները ըստ կամս կուգային իրենց զօրքով միանալ արքայական բանակին՝ կամ հեռանալով իրենց բերդերը կը քաշուէին, երբեմն ալ դասալիք ըլլալով թշնամեաց ռազմերը զօրացնելու կերթային. մերթ առ նախանձու իրարու դէմ արիւնռուշտ պատերազմներ մղելով երկիրը տակն ու վրայ կ՚ընէին արհամարհելով արքային յորդորը ու միջնորդութիւնը։

Ահա այս պատճառաւ Խոսրով Բ. ջնջեց երկու նախարարութիւններ։

«Եւ զայն ժամանակաւ յարեաւ խռովութիւն մեծ յաշխարհին Հայոց, զի մեծ նախարարք և իշխանք երկու, գաւառակալք աշխարհատեարք անզանէին ընդ միմեանս մեծաւ ոխութեամբ յարուցին կռիւ, և տային ընդ միմեանս մարտ պատերազմի առանց հրամանց: Եւ պղտորէին զմեծ աշխարհն Հայոց իշխանն Մանուազեան տոհմին, և միւս ևս նահապետն Որդունեաց տոհմին։ Կռուեցան ընդ միմեանս մեծաւ պատերազմաւ և

բաղում մարդկան լինէր ծախումն կոտորածոյ։ Ապա առաքեցին Թագաւորն Խոսրով և մեծ եպիսկոպոսապետն Վրթանէս զպատուական զմեծ եպիսկոպոսն Աղբիանոս ի մէջ նոցա, խօսել ի հաշտութիւն խաղաղութեան։ Երթեալ հասանէր ի մէջ նոցա երանելին Աղբիանոս, զնոսա ուղղել նուաճել՝ ընդ միմեանս հաշտեցուցանել։ Անարգեցին զնա, և ոչ լուան բարեխօսութեանն եկեղեցւոյն. անգոսնեցին զշղեշիսն (Թագաւորը և կաթողիկոսը) և մեծաւ Թշնամանօք արձակեցին զեպիսկոպոսն, եւ առնուին աւերէին զտունն արքունի: Եւ զայրացեալք խստութեամբ, հապճեպ տային ընդ միմեանս մարտ պատերազմի։ Ապա մեծ ցասմամբք և բաղում սրտմտութեամբ արձակեաց Թագաւորն ի վերայ նոցա զՎաչէ որդի Արտաւազդայ, զնահապետն Մամիկոնեան տոհմին՝ յազգէ սպարապետութեան Հայոց, զմեծ զօրավար զօրաց իւրոց, սատակել կորուսանել զազգն երկոսեան։ Ապա երթեալ հասանէր ի վերայ նոցա զօրավարն Վաչէ. հարկանէր վանէր զազգսն երկոսեան, և ոչ Թողոյր զերկոցունց տոհմացն զորձ կորիւն և ոչ զմի. և ինքն դառնայր առ արքայն Խոսրով Թագաւորն Հայոց, և առ եպիսկոպոսապետն Վրթանէս*»։

Դարձեալ Խոսրով Բ. ի ժամանակ պարսիկները կարշաւեն ի Հայաստան. Խոսրով անոնց

(*) Բուզ. դպր. Գ. գլ. Գ:

դէմ կը ղրկէ զԴատաբէն՝ Բզնունեաց նահապետը։ Անօրէն Դատաբէն Պարսից կողմը կ՚անցնի և քառասուն հազար հայեր կը կոտորէ ու կը պատրաստուի Պարսից հետ խաղալ Խօսրովի վրայ։ Հազիւ ուրեմն Վաչէ կը հասնի կը յաղթէ Պարսից և բռնելով զԴատաբէն մատնիչը կը բերէ առ Խօսրով, որ կը հրամայէ զայն քարկոծել։

«Եւ մինչդեռ նա (Խօսրով) յայնմ գործ զմայրեօքն տնկելովք էր*, յանկարծակի գուշակ հասանէր առ Խօսրով ի Հէր և ի Զարաւանդգաւառ, թէ պատրաստեալ են զօրք Պարսից գալ հասանել ի գործ պատերազմի ի վերայ քո։ Ապա հրաման ետ արքայ Խօսրով Դատաբայ նահապետի Բզնունեաց, գուգազ հանել յաշխարհէ աւելի քան զչափն. և զհամար զօրսն մատենիկ գնդաւն ընդ առաջ նոցա խաղալ հասանել ի դիմի հարկանել, արգելուլ զթշնամիսն։ Ապա Դատաբէն երթայր ընդ առաջ զօրացն Պարսից բազմութեամբ զօրօքն Հայոց։ Իբրև հասանէր Դատաբէն, խորհուրդ միաբանութեան դնէր ընդ իշխանսն զօրացն Պարսից. կամեցաւ մատնել ի ձեռս նոցա զարքայն Հայոց զտէրն իւր. դարան հրամայեաց գործել թշնամեացն ի վերայ իւրոց զօրացն։ Յանկարծ յեղակարծումն տարակարծի՝ քառասուն հազար զօրսն Հայոց միանգամայն

(*) Խոսրով կաղնեաց անտառ մը տնկել տուաւ Գառնին բերդէն մինչեւ ի Դուին:

կոտորէին, և այլ զօրքն փախստական լինէին. և Դատաբէն չարագործ առնոյր զզօրսն Պարսից, և կամէր անկանել ի վերայ թագաւորին Հայոց։ Ապա փախստականք զօրացն վաղ հասանէին ի բանակ արքային Հայոց, գոյժ առնել զանհնարին կործանումն իւրաց եղելոց, զչարագործութիւն մատնութեան անօրէն Դատաբենայ»։

«Ապա անգանէր թաւալէր խնդրէր յԱստուծոյ բազում պաղատանօք և ուժգին արտասուօք թագաւորն Հայոց Խոսրով, հանդերձ Վրթանաւ քահանայապետիւն։ Եւ յետ այսորիկ աճապարէր կուտէր զօրսն առ ինքն իբրև երեսուն հազար, հանդերձ զօրավարաւն Վաչէիւ. գայր հասանէր ընդ առաջ նոցա, ամենայն աւագախումբ մեծամեծ նախարարօք իւրովք։ Եւ դիպեցան միմեանց առ ափն ծովուն Բզնունեաց, յԱռեստն աւանի, ի ձկնատեսանսն արքունի ի վերայ գետակին։ Եւ տեսին զօրսն Պարսից, զի ոչ գոյր թիւ բազմութեանն, զի էին իբրև զաստեղս երկնից, և իբրև զաւազ առ ափն ծովու. զի եկեալ էին անթիւ փղօք և անչափ զօրօք։ Եւ սոքա հասին անկան ի վերայ բանակին, յուսացեալք առ Աստուած. հարին, սատակեցին, կոտորեցին, և ոչ թողին ի նոցանէ և ոչ մի։ Եւ թափէին աւար բազում, և զփիղսն և զամենայն ոյժ զօրութեան նոցա։ Ձերբակալ արարեալ զԴատաբէնն Վաչէ սպարապետն և քաջ Վահան Ամատունի, ածէին զնա առաջի մեծի թագաւորին Խոսրովու, և

քարկոծ առնէին զնա քարամբ իբրեւ զայր, որ աշխարհի եւ գնդի եւ զօրաց տեառն իւրոյ դաւաճան լեալ իցէ։ Եւ զազգ նորա եւ զկին եւ զորդիս գտանէր յամրոցի անդ իշխանին Ըռշտունեաց յանուանեալն յԱղթամար կղզւոջ. ի նաւ ելեալ Վաչէ սպարապետն, անցեալ ի կղզին՝ առ հասարակ ոչ զէգ թողոյր եւ ոչ զարու։ Եւ այսպէս բարձաւ ազգատոհմ նախարարութեանն այնորիկ եւ զտուն նոցա յարքունիս կալան»:

«Բայց յետ այսորիկ ոչ դադարէին Պարսք ի տալ պատերազմ ընդ Խոսրովու արքային. եւ նա դնէր օրէնս, զի մեծամեծ աւագանին, նախարարքն աշխարհակալքն աշխարհատեարքն՝ որ էին բիւրաւորքն եւ հազարաւորքն, կայցեն առ արքային, եւ ընդ նմա շրջեսցին, եւ մի ոք երթիցէ ի նոցանէ ընդ զօրս արքունի։ Զի երկնչէր նա յերկմտութենէ նոցա, զի գուցէ զնոյն գործ Դատաբենայն գործիցեն, եւ ապստամբ լինիցին ի նմանէ: Բայց վստահ լինէր ի ծերունին Վաչէ, ի բուն սպարապետն ի զօրավարն Հայոց մեծաց, եւ ի քաջ Վահան յԱմատունի։ Գումարէր զօրսն ամենայն տանցն աւագանւոյն ընդ զօրսն արքունի, եւ տայր զգումարտակն ամենայն ի ձեռս նոցա. Եւ հանապազ կային ի քաջութեան ի մարտ պատերազմի ի սահմանս Պարսից. եւ ոչ տային անխըտիր արշաւել աւերել զերկիրն Հայոց, եւ ոչ նայել*»։

(*) Բուզ. Գ. գլ. Ը:

Ահա մեր նախարարութեանց ճշգրիտ պատմութիւնը՝ որ լիովին կ'արդարացնէ Տիրանայ, Արշակայ և Պապի նպատակը՝ որ էր բնաջինջ ընել այս վտանգաւոր դասակարգը. սակայն խիստ դժուարին գործ էր այս, զի բիւրաւոր, հազարաւոր էին:

«Եւ այլ յայսմ ազգաց և ի խոնարհ՝ որ գործակալս անուն բարձիւք առաջի արքային պատիւ ի գլուխ բազմէին. թող զնահապետս մեծամեծս և զտանուտերս՝ որք գործակալք միայն էին, ինն հարիւր բարձ՝ որ մտանէր ի ժամ տաճարին ուրախութեանն բազմականացն կարգելոց. թող զոտնկայս գործակալութեանն սպասու*»:

Այսչափ առանձնաշնորհեալ իշխաններու, բարձերու մէջ արքայն շատ անկախ և ապահով վիճակ չունէր. արքայական իշխանութիւնը անդամատեալ յօշոտեալ մարմին մ'էր, պատրաստ որս Պարսիկ կամ ուրիշ պետութեան:

Խոսրով Բ. ալ երեք նախարարութիւններ ջնջեց, ի՞նչու ուրեմն Բուզանդ և Խորենացի զնա չեն պարսաւեր: Բուզանդ աւելի յառաջ երթալով՝ քաջ արանց աշխարհաշէնն Խոսրով կ'անուանէ զնա, որ միայն կաղնեաց անտառ տնկեց՝ մինչդեռ Արշակ և Պապ՝ շարունակ կը նախատուին կանարգուին հակառակ իրենց կա-

(*) Բուզ. Դ. գլ. Բ:

տարած մեծագործութեանց։ Այս հարցման պատասխանը պարզ է. Արշակ, Պապ եւ նոյն իսկ Վարազդատ կառավարել ուզեցին անկախ. ա՛յս է ահա իրենց ամենամեծ յանցանքը։

Արշակ կոտորած նախարարաց ինչքը յարքունիս գրաւեց. Արշարունեաց գաւառը՝ որ Կամսարականաց ստացուածն էր՝ միացուց արքունի կալուածոց հետ և հոն Արտագերս անուն անառիկ բերդը շինել տալով՝ բոլոր գաւառը բերդի ուտեստի համբարանոց սահմանեց։

Այս Արտագերս բերդը տասնըչորս ամսու չափ իւր դիմաց գամեց յուսահատ՝ Պարսիկ մեծ զօրաբանակ մը։ Ասոր կերևի որ Արշակ ռազմագիտական մեծ տաղանդ ունէր, և միայն հայրենեաց օգտին համար կընէր այս բարենորոգումները ու ոչ թէ ագահութեան համար՝ ինչպէս կըսէ Խորենացին։ Ծերունի պատմիչը Բուզանդէն բոլորովին տարբեր կը պատմէ Նախարարաց կոտորումը յԱրշակայ և Արտագերս ամրոցին շինութիւնը։

Ի հեռանալ Մեծին Ներսիսի՝ ստեաց Արշակ ամենայն ուխտին զոր եդ ընդ նախարարսն, և խնդրեաց զքէն ձեռակերտին իւրոյ Արշակաւանու։ Եւ կոտորեաց զբազումս ի նախարարացն, մանաւանդ զազգս Կամսարականաց բառնայր ի միջոյ, չարակնելով ագահեալ յամուրն Արտագերս և ի քաղաք ոստանի նոցա Երուանդաշատ։ Եւ կոչեալ առ ինքն ի լքեալ արքունիսն Արմա-

ւիր իւր զազգական իւր՝ ի պատճառս պատուոյ մեծարանաց, միահաղոյն զարս և զկանայս հանդերձ մանկամբք հրամայեաց կոտորել։ Եւ ոչ ոք ի նոցանէ ապրեցաւ, բայց Սպանդարատ որդի Արշաւրի· որ լուեալ զբօթն, հանդերձ որդւովքն Շաւարշաւ և Գազաւոնիւ և բոլոր ընտանեօք գնաց փախստական ի Յոյնս(*)»։

Խորենացւոյ գրածէն կը տեսնուի որ Մեծն Ներսէս Նախարարաց կոտորման միջոցին կաթողիկոս էր՝ և ի Բիւզանդիոն կը գտնուէր. ասիկա պատմական վրիպակ մ'է։ Ըստ Բուզանդայ Մեծն Ներսէս այս ատեն կաթողիկոսութենէ հրաժարած էր. զի Գնելի սպանման օրէն մինչև Արշակայ անկումը Մեծն Ներսէս այլևս գործ չունեցաւ Արշակայ հետ։ Դարձեալ Բուզանդէն կիմանամք որ Արշակ ինքն կը չինէ Արտագերս ամրոցը և ոչ թէ անոր վրայ չարակնելով ջնջել կուտրայ Կամսարականաց ցեղը. Նոյնպէս Սպանդարատ Բուզանդայ մէջ մանկիկ է՝ Խորենացւոյ մէջ՝ ընտանեաց և զաւակներու տէր։

Բայց թէ ինչո՞ւ մենք աւելի հակամէտ ենք սովորաբար Բուզանդ ընտրելու քան Խորենացին. զի Բուզանդայ բոլոր պատմական տեսութիւնները զտուելով իրենց աւելորդաբանութիւններէն՝ կէտ առ կէտ կը միաբանին տիեզերական պատմութեան հետ։

---

(*) Խոր. Գ. ԼԱ։

«Այլ ահա ի ժամանակին՝ յորժամ մերժեցաւ յարքունական բանակէն սուրբ եպիսկոպոսապետն Ներսէս, և ոչ ոք գոյր ընդդիմացեալ թագաւորին՝ որ տայր նմա զյանդիմանութեան զխրատն, այնուհետև ըստ կամաց չարութեանն իւրոյ գնացեալ լինէր նա. և զբազումս ի նախարարացն կոտորեաց, զբազումս ազգատ արարեալ անճիտեաց, և զբազմաց տունս հատանէր յարքունիս։ Բայց զտոհմս Կամսարականացն՝ որ էին գաւառաց տեարք, Շիրակայ և Արշարունեաց, ազգատ առնէր, և զգաւառսն ունէր յոստան։

«Բայց յազգէն յայնմանէ մանկիկ մի փոքրիկ, անուն Սպանդարատ, թագուցեալ ապրեցուցանէր սպարապետն զօրավարն Հայոց Վասակ, որ յետոյ լինէր ժառանգ աշխարհին։ Թագաւորն Արշակ հրաման տայր՝ յԱրշարունեաց գաւառին շինել իւր բերդ մի ամուր, Արտագերս անուն*»:

Բայց պիտի առարկուի թէ՝ այս սպանութիւնները պարսաւելի չէ՞ին, մարդասիրական զգացման հակառակ չէ՞ին։ Առ այս կը պատասխանենք թէ՝ հին ժամանակ այս կերպ սպանութիւններ քաղաքական օրինաց և արքային իրաւանց կարգն անցած էին՝ և Արշակ ինքնահնար նոր օրինակ բան մը չէր ըներ։ Աւա՜ղ որ Արշակ չկրցաւ ազգին մարմնոյն այս քաղցկեղը՝ նախարարութիւնները իսպառ բառնալ ի միջոյ։

(*) Բուզ. Դ. գլ. ԺԹ:

Արշակայ յիշատակին դէմ եղած սովական անարգանաց մին ևս հայրասպանութեան զրպարտութիւնն է։ Խորենացին կը գրէ թէ՝ Արշակ չդիմանալով իւր հօր յանդիմանութեան՝ Գնելի սպանման համար՝ զայն խեղդել տուաւ գաղտնի։

Բուզանդ՝ որ բնաւ առիթ չփախցներ մեր արքայից՝ մանաւանդ Տիրանայ, Արշակայ և Պապայ ամենափոքր թերութիւնները ծաղրելի առասպելաբանութեամբք մեծցնելով պատմելու՝ բառ մը իսկ չը գրեր այս հայրասպանութեան ահաւոր ոճրին վրայ։ Մեծն Ներսէս և իւր փոխանորդը՝ Խադ՝ միշտ կը յանդիմանէին կը կշտամբէին զԱրշակ՝ բայց բնաւ չեն յիշեցներ նմա հայրասպանութիւնը։

Ուստի՞ կառնու ուրեմն Խորենացին այս զրպարտութիւնը։ Խելքի դէմ չէ՞ կարծել՝ որ Արշակ սպաննել տայ իւր կոյր ծերունի հայրը՝ վասնզի սա յանդիմանեց զինքն՝ և խնայէ Մեծն Ներսէսի և Խադ եպիսկոպոսին՝ որ ամեն օր չարաչար կը կշտամբէին զնա։ Կրնա՞յ կարծուիլ որ Արշակ առ երկիւղի չխնայեց այդ բարձրաստիճան եկեղեցականաց. բայց ահա Տիրան՝ որ Արշակայ չափ ազդեցութիւն չունէր ազգին վրայ՝ գանակոծութեամբ սպաննեց կրսեն՝ զՅուսիկ կաթողիկոսը՝ զի սա նախատեր էր զարքայն։

9. Արշակ Մեծին Ներսէսի հրաժարումէն վերջ՝ կաթողիկոս դրաւ Չունակ անունով զզօն

անձը՝ առանց ըստ սովորութեան ձեռնադրել տալու Կեսարիոյ արքեպիսկոպոսէն։ Այսպէս Հայոց կաթողիկոսութիւնը՝ որ ցայն վայր Յունաց պատրիարքութեան մ'արբանեակն էր՝ անկախ եղաւ։

Թէ ի՛նչ մեծ բարիք էր այս մեր ազգին՝ հարկ չէ ըսել։ Բաւ է միայն գիտնալ թէ մեր քաղաքական անկախութեան անկմանէն ի վեր՝ եկեղեցւոյ անկախութիւնն է որ պահպանած է մեր ազգը։ Այս միակ գործքը բաւական է անմահացնելու զԱրշակ։

Խորենացին ազգային պատմիչ ըլլալով հանդերձ՝ ի վեր չէ հանած այս մեծ դէպքը, անշուշտ մէկ կողմէն Յոյները՝ որոց դիւրազգացութիւնը միշտ կը դգուէ՝ չզայրացնելու՝ և միւս կողմէն՝ իւր պաշտպան և վարդապետ Մեծն Սահակ՝ Մեծին Ներսիսի որդին՝ չվշտացնելու համար։ Եւ սակայն բոլորովին լռութեամբ անցնելն այսչափ կարևորագոյն եղելութեան մը վրայ՝ մեծ պատմագրի մը պարտաւորութեանց հակառակ է։

«Այլ սուրբ կաթողիկոսն Ներսէս այլ ոչ ևս յաւել տեսանել զերեսս Թագաւորին Արշակայ մինչև յօրն նորին կորստեան. այլ փոխանակ Ներսիսի զՉունակ ոմն անուն, և կացուցին փոխանակ նորա գլուխ քրիստոնէութեանն. և էր ստրուկ ի ստրկաց արքունի։ Այս հրաման տայր Թագաւորն՝ կոչել զամենայն եպիսկոպոսս Հա-

յոց աշխարհին, զի եկեսցեն ձեռնադրեսցեն զՁունակն ի կաթողիկոսութեան Հայոց։ Եւ ոչ մի ոք ոչ հաւանեաց գալ. բայց միայն Աղձնեաց և Կորդուաց եպիսկոպոսք եկին, և զՁոնակն ձեռնադրեցին կաթողիկոսութիւն ըստ հրամանի թագաւորին։ Եւ էր Ձոնակն այր զգօն, և ոչ ինչ ունէր լեզու յանդիմանութեան կամ խրատու, այլ հաւանեալ էր թագաւորին զինչ և նա գործիցէ*»։

**10.** Արշակ թէպէտ ներքին խռովութեան տարրերը նուաճեց՝ սակայն արտաքուստ փափուկ վիճակի մէջ կը գտնուէր։ Հռովմէական կայսերք և բանակներ կը մաշէին՝ իսկ Շապուհ իւր խոր ծերութենէն նոր զօրութիւն քաղելով կարծես կը մանկանար։ Արևելից և Արևմտից հսկայներուն աւանդական պայքարը կը շարունակէր ևս քան զևս կատաղաբար։

Խնդիր է թէ Արշակ այս պատերազմաց ատեն միշտ Հռովմայեցւո՞ց դաշնակից մնաց՝ թէ իրաւամբ կասկածելով անոնց անհաւատարմութենէն՝ չէզոք կեցաւ՝ կամ երբեմն իսկ ձեռնտու գտնուեցաւ Շապհոյ։

Ամիանոս՝ ժամանակակից Լատին պատմիչը՝ զԱրշակ միշտ նիզակակից Հռովմայեցւոց և Պարսից թշնամի կը դնէ. իսկ Բուզանդ կը պատմէ

(*) Բուզ. դպր. Դ. գլ. ԺԵ:

*Թէ Արշակ՝ տեսնելով որ պատերազմ կը սաստկանայ ընդ Հռովմայեցիս և ընդ Պարսիկս՝ հպարտանալով իր զօրութեան վրայ՝ չէզոք կեցաւ ի սկզբան՝ դիտելու համար թէ երկու հակառակորդներէն ո՞րը պիտի խնդրէ իւր օգնութիւնը, թէ՝ Արշակ կը փափաքէր օգնել Յունաց՝ իսկ անոնք զինքը չկոչեցին եւ իրեն պատիւ չըրին։ Ապա ըստ խնդրանաց Շապհոյ ձեռնտու եղաւ անգամ մ'անոր՝ և Յունաց զօրքը սրէ անցուց։ Շապուհ ուզեց զայն վարձատրելու համար իւր դուստրն տալ նմա կնութեան՝ և յաւիտենական բարեկամութեան դաշինք հաստատել երկուց երկրաց մէջ։ Ասկէ առաջ Շապուհ անգամ մ'ալ ի Պարսկաստան հրաւիրեց զԱրշակ. մեծ փառօք պատուեց զնա՝ և խնդրեց որ Յոյներէն զատուի՝ ու իրեն հետ բարեկամանայ։*

*Արշակ երկու անգամուն ալ խօսք տուաւ, բայց մի անգամ Վասակ սպարապետին և Փառանձեմայ, իսկ երկրորդ անգամ Անդովկայ Սիւնւոյն՝ Փառանձեմայ հօր դաւով ատեց Շապհոյ սիրոյն, փախաւ անոր քովէն, և այսպէս յուղեցաւ երեսնամեայ* պատերազմն ընդ մէջ իւր և ընդ մէջ Շապհոյ, որ և վերջացաւ մեր նախարարաց մատնութեամբ և Արշակայ անկմամբ։*

*Բուզանդայ այսչափ մանրամասն պարա-*

(*) Այս երեսնամեայ թուականն ճիշտ չերեւիր, զի Արշակ ընդամենն հազիւ *10* տարի թագաւորած է։

դայներով յառաջ բերած վերոյգրեալ իրողութիւնները բոլորովին մտացածին չեն կրնար ըլլալ։ Հաւանականն ա՛յս է որ՝ Արշակ նախ փափաքէր է Պարսից դաշնակցիլ, բայց ապա տեղի տուած է եկեղեցականութեան և ազգին մեծամեծաց՝ որ Յունաց կուսակից էին։

«Յայնմ ժամանակի կոչէր առ ինքն Շապուհ արքայն Պարսից զթագաւորն Հայոց զԱրշակ, և մեծարեցաւ ի նմանէ բազում պատուով և մեծաւ փառօք, բազում գանձու ոսկւով և արծաթով ամենայն մեծութեամբ թագաւորութեանն։ Եւ իբրև զեղբայր որպէս զորդի գրգեալ եղև ի նմանէ և երկրորդական զմեծ տունն տայր նմա յԱտրպատական աշխարհին. և ի միասին ի միում տախտի գահոյն ի ժամ ուրախութեանն բազմէին, զմիագոյն զմիանշան զհամահանդերձ զարդու։ Եւ զմիօրինակ զթագն օր ըստ օրէ ինքեան և նմա թագաւորն Պարսից զարդ պատրաստէր. զոյգ երկոքին ի միասին որպէս զեղբարս հարազատս անբաժինս ջղփացեալք էին ի միում ուրախութեան, և յանպատում ուրախութեան ուրախ լինէին։

«Ապա եղև դէպ օր մի յաւուրց, եկն եմուտ ի թագաւորն Հայոց Արշակ շրջել զասպաստանաւ միով զարքային Պարսից. իսկ ախոռապետն արքային Պարսից նստէր ի ներքս ի տան ասպատանին։ Իբրև տեսանէր զթագաւորն, ոչինչ առ լուս կալեալ մեծարեաց զնա, և ոչինչ շուքս

դնէր նմա. այլ և անարգանս ևս դնէր թշնամանաց, ասելով ի պարսկերէն լեզու՝ թէ այծից Հայոց արքայ եկ նիստ ի խրձան խոտոյ ի վերայ։ Զոր բանս իբրև լսէր սպարապետն զօրավարն Հայոց մեծաց, որում Վասակն կոչէր, ի Մամիկոնեան տոհմէն, մեծաւ բարկութեամբ և բազում սրտմտութեամբ բարկանայր. ի վեր առեալ զսուսերն, զոր ընդ մէջն ունէր, հարեալ անդէն ի տեղւոջն զախոռապետն արքային Պարսից գլխատէր ի ներքս յասպաստանի անդ։ Զի ոչ կարաց լսել և ժոյժ ունել զիւրոյ թագաւորին զանարգանս. զիւր մահն առաջի եդեալ լաւ համարէր բազում անգամ, քան զտեառն իւրոյ լսել զվատթարութեան թշնամանս։ Իբրև ի Պարսից աշխարհի էին, յայլոց ի տեղի և ի նոցուն հրապարակի աներկիւղ և անկասկած յանկարծօրէն զայսպիսի զգործ կարաց գործել։ Իսկ թագաւորն Պարսից յորժամ զայս լսէր, բազում շնորհ ունէր զօրավարին Վասակայ, ընդ քաջասրտութեանն զարմացեալ և ընդ բազում աներկիւղութիւնն։ Եւ բազում պարգևաց և պատուոյ արժանի առնէր, զքաջութիւն և զտիրասիրութիւնն գովեալ։ Վասն այնր իրաց մեծաւ սիրով սիրէր զնա և ըստ արժանի իւրում պատուէր զնա. մեծարէր զամենայն աւուրս հաշտութեան և խաղաղութեանն, որ ի մէջ նոցա էր։

«Ապա մինչ դեռ անդէն ևս էր արքայն Հա-

յոց առ արքայի՛ն Պարսից, և մեծ սէր էր ի մէջ նոցա և մեծ խաղաղութիւն, երկնչելով երկեաւ թագաւորն Պարսից Շապուհ, եթէ գուցէ ստեսցէ սիրոյն նորա Արշակ արքայ Հայոց, և լիցի միաբան ընդ կայսերն Յունաց, և կամ կողաքակ ինչ լիցի ի նմանէ։ Եւ ոչ հաւատայր նմա, թէ պահեսցէ առ նա զմտերմութիւն սիրոյն, և կացցէ յուխտին միաբանութեան ընդ նմա։ Վասն այսորիկ երդումն պահանջէր ի նմանէն, մինչև կարի ստիպեալ բռնադատեաց զնա. հաւանեաց, ասէ և երդուիր ինձ յօրէնս քո, զի մի՛ ստեսցես ինձ։ Իսկ իբրև կարի բռնադատեցաւ և ի նեղ անգաւ և չտապեալ տագնապեցաւ, ետուն հրաման ածել զերիցունս եկեղեցւոյն Տիսպոնի քաղաքի, որում անուն գլխաւորին Մարի. և բերին զաւետարանն սուրբ և տայր երդումն արքային Պարսից Շապուհ արքային Հայոց Արշակայ՝ երդնուլ յաստուածեան աւետարանն, զի այլ մի՛ ևս ստեսցէ նմա. այլ կացցէ յուխտի նորա, և պահեսցէ զդաշինս նորա։ Եւ վասն զի պատգամաւոր իրացս այսոցիկ էր տանուտէրն նահապետն Մամիկոնեան տոհմին երէց եղբայր Վասակայ սպարապետին, որում անուն Վարդան կոչէր, մեծապէս արքայ Շապուհ յակն առեալ սիրէր զնա։ Իսկ իւր եղբայրն Վասակ զօրավարն Հայոց նախանձ բերէր ընդ երիցու եղբօրն իւրում ընդ Վարդանայ։ Կամեցաւ խանգար առնել ի մէջ Արշակայ թագաւորին Հայոց, և փախչել.

այլ ասէր Տապուհ. Թէ ձեր սրտի մտօք էր տուեալ զերդումն, զի՞րդ կարէր ընդ հաւանութեան ելանել երդմանցն և կամ փախչել։ Այլ ասէ, գիտեմ զի կախարդութեամբ խաբեցէք զիս. և որ ունի զօրէնսն ձեր*, զնա սիրեցէք և նենգութեամբ նմա խորհրդակից եղեալ, յինէն փախուցէք։ Եւ կամիք դուք զտէրութիւն Արշակունեաց** ի վերայ ձեր, և զնոյն խնդրէք։

Եւ երդնու Տապուհ արքայ յարեգակն և ի ջուր և ի կրակ, եթէ ոչ միում մարդոյ, որ յայդմ օրէնս քրիստոնէութեան է, ոչ տամ ապրել. և հրաման տայր զամենեսեան տանել սպանանել։ Եւ տանէին զգլխաւորն նոցա զՄարի երէց, և զայլ երիցունսն և զսարկաւագունսն, աւելի քան զեւթանասուն այր. ի մի գուբ զամենեսեան զնոսա փողոտէին։ Եւ զաւետարանն սուրբ՝ յոր երդուեալ թագաւորն Արշակ՝ կապէր պատէր երկաթի սարեօք, և իւրով մատանեաւն կնքեալ ի գանձատան հրամայէր. և տայր հրաման պահել զգուշութեամբ։

Իսկ Վարդանն, Մամիկոնեան տոհմին տանուտէրն, գայր հասանէր հրեշտակութեամբ յարքայէն Պարսից առ արքայն Հայոց Արշակ. և մատուցանէր զհրովարտակն առաջի նորա։ Եւ պատմէր նմա ի նմանէ բանս խաղաղութեան և

(*) Յունաց կայսրը։

(**) Տես երես 58։

զհաշտութեան, և զերդմանցն հաստատութիւն։ Եւ տայր պատգամ, թէ որ ինչ եղեն, այն ահա թողեալ լիցի փոխան. բայց դու յայսմհետէ կաց յուխտին բանի, և մի անցանէր ըստ բան երդմանցն քում օրինաց՝ յոր երդուար։ Ապա թէ ոչ դու գիտես, և քո օրէնքն որում ստեսն։ Իսկ Արշակ թագաւորն սիրով ունէր և սիրով լսէր պատգամին և հաւանէր ղասացելոցն։ Եւ խաղաղութեամբ արձակէր զմեծ նահապետն ի տուն իւր, զի երթիցէ հանգիցէ յաշխատութենէն յերկայն ճանապարհէն. և գնաց։

Եւ յորժամ եկն նահապետն Վարդան առ Արշակ, ոչ դիպեցաւ անդ կրսեր եղբայր նորին Վասակ առ արքայի։ Ապա յետ այսորիկ եկն Վասակն, և գրգռէր զթագաւորն ընդ իւրում եղբօրն երիցու, ասելով՝ թէ Վարդան է որ մատնէ զքեզ թագաւորին Պարսից, և կամի կորուսանել զքեզ. եթէ ոչ աճապարեսցես վաղագոյն սպանցես զնա, դու կորնչիս և աշխարհս Հայոց։ Ապա և կին թագաւորին ես գրգռէր զթագաւորն սովին բանիւք, և զբանս զօրավարին Վասակայ հաւատարիմ առնէր նմա։ Վասն զի ունէր նա զոխսն զայն ընդ Վարդանայ, զի նենգութեամբ և դաւով և մեծաւ երդմամբ սա այս Վարդան կոչեաց զԳնելն զայր նորա. յորժամ սպանանէր զնա թագաւորն Արշակ։ Իսկ կինն զնոյն ոխութիւնս պահէր նմա, վասն այնորիկ աւելի ես գրգռէր կինն թագաւորին ի վե-

րայ նորա. մինչ զի և զօր գումարեցին ի վե-րայ Վարդանայ, զի երթեալք սպանցեն զնա. Նա և ինքն իսկ իւր եղբայր Վասակ երթայր ի վերայ նորա։

Ապա երթեալ գտանէին զնա յիւրում գա-ւառին ի Տայս, յիւր ամուր բերդին՝ որում ա-նուն Երախանի կոչի։ Իբրև տեսին զգունդն թէ Վասակ է, ոչ ինչ երկեան և ոչ զգուշացան կամ կասկածեցին. համարեցան զզօրն եղբօրն՝ թէ խաղաղութիւն է եկն նորա, մինչ իջին առ խորա-նին դուրս, զի էր հարեալ զխորանն ի ձոր յունջ բերդին։ Եւ մարդիկ զօրացն Վասակայ էին ա-մենեքեան ի ծածուկ վառեալք և ի վերայ ա-գուցեալք հանդերձ։ Եւ մինչ դեռ նա լուանայր գլուխ իւր մերկանդամ, հասանէին սուսերօք բազում մարդիկ և խոցոտէին զնա մինչ դեռ նա կայր խոնարհեալ՝ զի արկցեն ջուր ի վերայ նորա։ Եւ ոչ ոք տայր ժամանել յառնել զի անդէն ի կողի սպանանէին զնա։

Եւ կինն նորա յղի էր, և հասեալ էին ա-ւուրք ծննդեան իւրոյ։ Մինչ դեռ ի վեր ի բեր-դին նստէր ի գահոյս իւրում, եղև գոյժ սաս-տիկ. իսկ նա իբրև զձայն գուժոյն լսէր, վաղէր ի գահոյից անտի։ Եւ ընդ վաղելն ծնանէր զմա-նուկն։ Եւ կոչէին զանուն մանկանն յանուն հօր իւրոյ Վարդան։

«Այլ զառաջինն իբրև փախեաւ Թագաւորն Արշակ յարքայէն Շապուհ, և անարգեաց զնա

յետ երդմանցն իւրոյ, զառաջինն Շապուհ արքայն Պարսից ոչ ինչ խստութեամբ ջանացաւ ընդ նմա. վասն զի մարտ դեռ բազում սաստկացեալ էր ի մէջ իւր և ի մէջ թագաւորին Յունաց։ Եւ իբրև հաղ քան զհաղ յաւել լինել պատերազմ, իսկ թագաւորն Հայոց Արշակ զառաջինն ընդ միտս իւր մեծամտեալ էր, և նայէր տեսանել թէ ո՛վ ի նոցանէն կոչեսցէ զնա ի թիկունս օգնականութեան յաղագս գործոյ պատերազմին։ Ակն ունէր, երթալ կամելով յօժարութեամբ ի թիկունս կայսերն Յունաց. իսկ նոքա ոչ կոչեցին զնա, և ոչ շուք ինչ եդին նմա և ոչ մեծարանս։

Իսկ թագաւորն Պարսից Շապուհ յղէր առ նա հրեշտակս խաղաղութեան. յուշ առնէր նմա զառաջին երդումն, ասելով՝ եթէ կամ լիցի եղբօր զի եկեսցես օգնեսցես ի պատերազմիս, զի ի թիկունս հասցես քո գնդաւդ։ Ասէ. թէ դու ի մեր կոյս լինիս, գիտեմք զի մեր լինելոց է յաղթութիւնն։ Ապա յորժամ զայս լսէր Արշակ արքայ Հայոց, մեծաւ ուրախութեամբ կամեցաւ երթալ ի թիկունս օգնականութեան, զօրավիգն լինել Շապհոյ թագաւորին Պարսից։ Ապա տայր հրաման թագաւորն Արշակ Վասակայ իւրում սպարապետին, գունդ գումարել, զօրս պատրաստել։ Եւ նա վաղվաղակի կատարէր զհրամանս թագաւորին. չորեք հարիւր հազար զօր*

(*) Բուզանդայ պատմութեան մէջ գտնուած զին-

*կուռ վառեալք, որ ընտիրք և պատերազմողք էին, լի արութեամբ արուեստաց նահատակութեանն։ Նիզակաւորք, սուսերաւորք, աղեղնաւորք անվրէպք կորովիք, վաղրաւորք, սակրաւորք, որք ոչ գիտէին զերկիւղ զանգիտելոյ յարանց յախոյանց. համակ հեծելազօրք զրահաւոր պատէնազէնք, սաղաւարտաւորք, դրօշաւորք, կազմ նշանաւորք բազմաձայն փողարօքն։*

*«Խաղաց գնաց թագաւորն Արշակ բազմակոյտ նախարարօքն, չուեաց ընդ Աղձնիս ընդ իւր իշխանութիւնն. չոգաւ թափեցաւ յերկիրն Արուաստանի դէմ յանդիման Մծբնացւոց քաղաքին, որ էրն տեղի ճակատուն պատերազմին։ Ապա երթեալ տեսանէին զժամադիր արարեալ միմեանց վասն իրաց պատերազմին կողմանցն երկոցունց։ Իսկ զօրքն Յունաց հասեալք, մածեալք բանակեալք էին իբրև զաւազ առ ափն ծովու բազմութեամբք։ Իսկ զօրքն Պարսից չուէին* հասեալ ի ժամադիր տեղի պատերազմին։ Իսկ զօրքն արքային Հայոց կանուխ քան զՊարսսըն ի տեղի ճակատուն հասանէին, և զտեղի առեալ կային։ Ապա տապել սկսան զօրքն Հայոց ընդ իւրեանց նիստ խափանածոյն. և ոչ առնուին*

---

ուորական զօրութեանց քանակութիւնը կարի յոյժ չափազանցուած է, Հայաստան երբէք չէ կրցած այս աստիճան մեծ բանակներ գումարել:

(*) Աւելի ճիշդ կըլլար՝ *չեւէին:*

յանձն Թեալ կամ անսալ զօրացն Պարսից, այլ կամեցան յարձակել դիմել հասանել ի վերայ Թագաւորին Յունաց ինքեանք առանց Պարսից զօրացն՝ անձամբք վճարել զգործ պատերազմին։ Եւ այր ամենայն զօրացն Հայոց ինքնակամք իւրաքանչիւր արձակ արձակ խաղային. եւ առաւել զօրավարն նոցին Վասակ քան զամենայն զօրսն ելեալ առնէր, կապակոտոր լինէր, չմնայր հաւանութեան մինչև զօրքն Պարսից եկեսցեն, այլ զի միայն ինքեամբք վճարեսցեն զգործ պատերազմին։

Ապա միահամուռ զօրքն Հայոց անկանէին առաջի և խնդրէին յիւրեանց Թագաւորէն Արշակայ, զի մի պահեսցէ զնոսա մինչև եկեսցէ արքայն Պարսից Շապուհ. այլ վասն որոյ իրիք եկեալ իցեն, վաղագոյն նոցա զպատերազմ առյանդիման արարեալ համարձակեսցէ յարձակել քան զանսալն յօտար աշխարհին. առաւել մղձկէին, զի լաւ հաշուէին զմեռանելն առաւել քան զյամելն յօտար աշխարհին։ Ապա Թոյլ տայր նոցա Թագաւորն Արշակ, և յանդիմանէր նոցա զգործ պատերազմին։ Ապա կարգէր կազմէր պատրաստէր զամենայն զզօրսն Հայոց Վասակ զօրավարն սպարապետն Հայոց մեծաց։ Վարէր զինէր ժամանակալ լինէր Վասակ. հանդերձ ամենայն պատերազմող զօրօքն Այրարատեան գնդաւն ելանէր անկանէր ի վերայ բանակին։ Առ հասարակ ընդ սուր հանեալ կոտորէին, այնպէս

զի ոչ ապրեցուցանէին ի նոցանէ և ոչ զմի։ Եւ առնուին զկապուտ զաւար յունական զօրացն, զի ոչ գոյր չափ կամ թիւ որչափ լցան գանձօք. և անհամար կարասեաւ մեծաւ աւարացն յըղփացան։

Եւ յետ այսորիկ զտեղի ունէր արքայն Հայոց հանդերձ իւրովք զօրօքն, մինչև գայր հասանէր Շապուհ արքայն Պարսից ամենայն անթիւ և անչափ զօրօքն Պարսից։ Իբրև եկն ետես զջաղջութիւն գործոյն Հայաստան զօրացն, զի զճակատ մղեալ, զպատերազմ յարդարեալ. զյաղթութիւն կազմեալ և զգործ վճարեալ, կայր զարմացեալ մեծապէս, և պատուէր զԱրշակ արքայ Հայոց մեծապէս, և զամենայն մեծամեծս Հայոց. սոյնպէս և զսպարապետն Հայոց զՎասակ։

«Ապա խօսել սկսանէր թագաւորն Պարսից Շապուհ ընդ զօրս իւր՝ թէ զինչ պարգևս բարեաց կամ զինչ հատուցումն կարեմք մեք հատուցանել արքայիս Հայոց Արշակայ, զի զայսպիսի գործ գործեաց, կամ զայսպիսի քաջութիւն արարեալ, կամ զայսպիսի թշնամիս եհար և այսպիսի պատերազմ մղեաց, կամ զայսպիսի ճակատաւ յաղթեաց և զայսպիսի անուն ստացաւ մեզ։ Զի եթէ մեք լեալ էաք, ամենայն Արեաց զօրք հանդերձ այսպիսի աջողութեամբ գայր ի ձեռն, քաջ թէ ոյգ հասարակ այսպիսի զգործ ի միասին կարէաք գործել. արդ Հայոց արքայ

ջուրով, զօրութեամբն ընդ մեր նահատակեալ, զայսչափ քաջութիւնս արար, զոր ոչ ոք կարէ առնել ամենեւին: Արդ զորպիսի՞ հատուցումն բարեաց կարասցուք մեք առնել նմա: Եւ այսպիսի անդեալ էր ի խորհուրդս, թէ զինչ այն ինչ իցէ զոր տայցեմ ես նմա: Ապա տային պատասխանի նախարարքն իւր Շապհոյ արքային Պարսից, և ասեն ցնա՝ թէ զինչ և կամիս, իւ կամիս, կարող ես հաճել զնա. ոսկի քո շատ և արծաթ կերպաս և մարգարիտ, զինչ և միանգամ դու կամիս շնորհել նմա, տուր նմա: Ապա տայր պատասխանի Շապուհ թագաւորն Պարսից իւրոց իշխանացն, և ասէ. Արդ ոչ եթէ սէր ինչ է, զոր դուքդ ասացէք. այլ եկայք, անմահ սէր արասցուք մեք ընդ Արշակայ արքային Հայոց, զի մինչեւ յաւիտեան անքակտելի լիցի նա ի մէնջ: Տացեմ զդուստր իմ կնութիւն Արշակայ արքային Հայոց, և տաց նմա տուն մեծ. զի յորժամ գնասցէ ի Հայոց գալ առ մեզ, այնպէս տացուք նմա տուն, զի ի Հայոց մինչև ի Տիզբոն մինչև առ մեզ համակ յիւրում տան ագցի, մինչև առ մեզ եկեսցէ: Թագաւորին զայս արասցուք իսկ զօրավարին Վասակայ կամ այլոց մեծամեծացն և զօրավարացն տացուք ոսկի և արծաթ, կերպաս և մարգարիտ: Եւ հաճեցան մեծամեծքն և խորհրդակիցք թագաւորին Պարսից ընդ այս խորհուրդ, և հաստատէին զասացեալսն՝ թէ արժան է զայդ առնել:

«Իսկ թագաւորն Պարսից Շապուհ մեծաւ ստիպով ստիպէր զթագաւորն Հայոց զԱրշակ, զի առցէ զնացէ զնա ընդ ինքեան յԱսորեստան, զի անդ մեծափառ պատուով և փեսայութեամբ մեծարեսցէ զնա։ Իսկ Արշակ և ամենայն զօրք իւր տաղտապէին երթալ զհեռւիճ տնապարհն. զի ամենայն ոք յանձնիւր տուն յիւրաքանչիւր տեղի զօրէն բարուց Հայաստան մարդկան անձկացեալ էին։ Եւ եղև իբրև ի վերայ հասանէր իրացն Անդովկ նահապետն Սիւնեաց գաւառին, եթէ Շապուհ թագաւորն Պարսից կամի տալ զդուստր իւր կնութեան Արշակայ թագաւորին Հայոց, մեծապէս երկեաւ և բախեցաւ նորա կասկած մտացն իւրոց։ Զի եդ ի մտի իւրում՝ թէ յորժամ առցէ Արշակ կին իւր զդուստր թագաւորին Պարսից, յայտ է այնուհետև թէ անարգի դուստր նորա։ Վասնզի Փառանձեմ դուստր Անդովկայ, որ էր կին լեալ Գնելոյ, ի ժամանակի անդ էր կին Արշակայ թագաւորին Հայոց. կասկածէր նա՝ թէ դուցէ յորժամ այլ առցէ, զնորայն անարգեսցէ։

«Անկանէր այնուհետև Անդովկ ի հնարս հնարել, և ի ծուփս խորհրդոց, գտանել պատճառս՝ զի ո՛ գիտէ կարասցէ ցրուել զսէրն մեծ, որ էր անկեալ ի մէջ թագաւորացն երկոցունց։ Նախ բազում ոսկի զօրավարին Հայոց Վասակայ Անդովկն մատուցանէր. սոյնպէս և զամենայն մեծամեծսն կաշառէր, զի հնարեսցի քակել զմեծ սէրն, որ իցեն ի մէջ թագաւորացն երկոցունց։

Եւ ամենայն մեծամեծքն ձեռն յանձին հարկանէին. առեալ ոսկւոյն կաշառօք խաւարեցան։ Ապա զմի ոմն յաւագաց թագաւորին Պարսից ի ներքին ի բուն խորհրդականացն ի բանի իւրում առնէր Անդովկն զհնարաւորութեամբն, զնենգաւորութեանն դաւաճանութեամբ մեքենայութեամբն, զի բանս արկցէ ընդ թագաւորին Պարսից ընդ Շապուհ և ընդ Արշակ։ Եւ տայր նմա Անդովկ ոսկի բազում և անհամար, և դնէր բանս ի բերան, զի իբրև կերպարանս գուշակի արասցէ ասել ցարքայ Արշակ, թէ ապրեցո զանձն քո, զի ճշգրիտ խորհուրդ խորհեալ է թագաւորին Պարսից ունել զքեզ և սպանանել։ Եւ յորժամ դու զայս ասասցես, ասէ. և զմեզ հրամայեսջիր կոչել ի խորհուրդն և զքո բանս աւագանին հաստատեն։

«Ապա գայր մտանէր խորհրդակից արքային Պարսից առ արքայն Հայոց. խօսել սկսանէր ընդ նմա զբանս ի բերան եդեալ Անդուկայն չարագործի, և ասէր՝ թէ արքայդ Հայոց Արշակ, ապրեցո զանձն քո, զի խորհուրդ խորհեալ է թագաւորին Պարսից Շապհոյ ունել զքեզ և սպանանել։ Կայր հիացեալ և զարմացեալ արքայն Արշակ ընդ բանսն ընդ այնոսիկ, և ասէ. Ի մեծի վաստակոցն իմոց ի վերայ այս՞ հատուցումն ի նոցանէն։ Ապա հրաման տայր կոչել զառաջեաւ իւրով արքայ Արշակ զամենայն զմեծամեծս իւր, և զամենայն խորհրդակիցս իւր,

զՎասակ սպարապետն, և զԱնդովկն զաներ իւր, և որ միանգամ էին Նախարարքն. և պատմէր նոցա զոր միանգամ լուաւ ինքն ի պարսկէ անտի։ Ապա և նոքա ընդ մի բերան ասէին ընդ նմա, թէ մեք զայդ վաղ լուաք, ցքեզ չիշխեցաք ասել. այլ իրքդ այդ հաստատ են։ Բայց արդ, արքայ, գիտեա տես զիա՞րդ ապրեցուսցես զանձն քո և զմեզ։ Ապա արքայ Արշակ բազում պարգևս գանձուց ոսկւոյ և արծաթոյ տայր պարսկին այնմիկ, որ ասաց նմա զբանս զայսոսիկ։ Եւ ինքեանք կազմեցան պատրաստեցան. խորհուրդ խորհեցաւ Արշակ Թագաւորն Հայոց, և յառնէին ի գիշերի որ միանգամ մարդ էր ի բանակին Հայոց, հեծան ի ձիս, և փախեան։ Եւ առ ետեղ թողին զխորանս և զվրանս զկահ և զկարասի և զկազմած իւրեանց, և զբանակն իւրեանց և գնացին գաղտուկ. և ոչ ոք ի բանակէն Պարսից գիտացին զայն մինչ ցայգ ցառաւօտն։

Եւ իբրև եղև ժամ այգորելի առ Թագաւորն Պարսից, և ամենայն Թագաւորք և իշխանք մեծամեծք իւր այգորեալ գային արքային Պարսից, բայց միայն ոչ ուրեք ի մէջ երևէր Թագաւորն Հայոց Արշակ հանդերձ իւրովք մեծամեծօքն։ Ապա տայր հրաման Շապուհ Թագաւորն պարսից իւրոցն, երթեալ տեսանել՝ թէ զինչ իրք իցեն ի բանակին Հայոց Թագաւորին Արշակայ, զի այնչափ ժամս յամեաց գալ յայ-

գօրել Թագաւորին Պարսից Շապհոյ։ Ապա երթեալ տեսանէին, զի Թափուր կայր բանակն աւանց մարդոյ. զի թողեալ էր իւրեանց զխորանս և զվրանս և զհովանոցս և զսրահակս և զգահոյս և զանկողինս և զկահ և զկազմածս և զկարասի իւրեանց, և զգանձս իւրեանց անգամ. բայց միայն զզէնս իւրեանց որ բարձեալ էին ընդ ինքեանս, և գնացեալք։ Եւ որք չոգան ի բանակն, գային զամենայն պատմէին Շապհոյ արքային Պարսից։ Եւ իբրև լուաւ Շապուհ արքայն Պարսից, քանզի այր իմաստուն էր, գիտացեալ ի կարծիս իմաստութեան իւրոյ զիրսն՝ որ ինչ եղեն, անդէն ասաց՝ թէ այն փախուստ Թագաւորին Հայոց յիմոց աստի եղեալ է. զի ի մէնջ ի մերմէ ի դրանէ աստի էին, ասէ, որք փախուցին զայրն զայն զԱրշակ։ Ապա իւրոց աւագացն ի մեծամեծացն դեսպան ձիով զբազումս յղէր զհետ Թագաւորին Հայոց, հանդերձ երդմամբ ի սէր միաբանութեան և յանդիմանութեան. զի դարձցին և զչարախօսութեան զբանս ի մէջ ածեալ կշտամբիցեն։ Եւ ոչ կամեցաւ արքայն Հայոց ունկնդիր լինել բանիցն պատգամաւորացն Թագաւորին Պարսից Շապհոյ, և ոչ դարձաւ այլ անդրէն յերկիրն Պարսից։ Ապա յայն օրէ հետէ և անդր յուզեցաւ պատերազմ գրգռութիւն մարտից ճակատուց ի մէջ Թագաւորին Հայոց Արշակայ և ի մէջ Թագաւորին Պարսից Շապհոյ ամս աւելի քան զերեսուն*»։

(*) Բուզ. դպր. Դ. գլ. ԺԶ. ԺԸ. Ի։

**11.** *Յուլիանոս կայսրն ուզելով մի անգամ ընդ միշտ խորտակել Սասանեան զօրութիւնը՝ երեսունըհինգ հազար զօրօք անցաւ ի Սիւրիա։ Պարսից իշխանութենէն գժգոհ մանր մունր ցեղեր առաջարկեցին կայսեր իրեն օգնել՝ իւր առաջադրեալ արշաւանաց մէջ։ Յուլիանոս վեհանձնաբար չ'ընդունեց անոնց առաջարկը, ըսելով թէ Հռոմայեցւոց անկ էր զանոնք պաշտպանել։ Սակայն առանց հայ բանակի մ'օգնութեան կայսրը չէր ուզեր մխել պատերազմին անստոյգ վտանգաց մէջ՝ ուստի թուղթ մը գրեց առ Արշակ՝ անոր նիզակակցութիւնը խնդրելու։ Յուլիանոսի նման մեծ մարդու մը գրուածէն պայծառ կը տեսնուի թէ Արշակ ի՛նչ նրբամիտ իշխան էր՝ և թէ՝ նա ակամայ դաշնակցած էր Հռովմայեցւոց։*

## Թուղթ Յուլիանոսի առ Արշակ Բ.*

*«Արշակայ Հայոց նախարարի. փութա՛ աճապարել իսկ և իսկ Արշա՛կ. վառեա զաջ քո ընդդէմ պարսկային մոլեգնութեանն։ Քանզի է մեր այնպիսի կազմութիւն և ուժգնութիւն ոգւոց, զի մին յերկուց առաջի կայ մեզ, եթէ իրք Պար-*

(*) Հ. Ց. Գարրճեան տիեզ. պատմ. հատ. Բ. երես *446*. Այս թուղթը Յուլիանոսի *բուն վաւերական* նամակն է՝ առ Արշակ Բ.

թեւացն յաջողեսցեն՝ մեզ քաջութեամբ զպատերազմն մղեալք և ամենայն զօրութեամբ ընդ Թշնամւոյն մաքառեալք՝ մեռանիցեմք և զբնութեանն պարտիս հատուցանիցեմք. և կամ եթէ օգնական մեզ դիքն լինիցեն՝ զպարսիկան վանեալ վկանդեալ՝ դարձցուք այսրէն յաղթութեամբ և նշան յաղթութեան ի վերայ թշնամեացն կանգնեսցուք։ Ապա զամենայն իսկ զյուլութիւն ծուլութիւն եւ զխնութիւն ի բաց թօթափես, և զմտաւ ած զԿոստանդիանոսն սքանչելի և զզօրութիւն արանցն երևելեաց որ ի քեզ և յորս նման քեզ բարբարոսն իցեն* ծախեցան ի յոյլն և ի զառամեալն Կոստանդեայ, և զիս ևս այժմ ած մտաւ զՅուլիանոս զքրմապետ, զկեսար զԱւգոստոս և զպաշտօնատար դիցն Արեայ, որ Փրանկացն և խժդժից սատակիչն եղև, իսկ Գաղղիացւոցն և Իտալացւոց ազատիչ։ Ապա եթէ այլ ինչ ի մտի խորհիցես, քանզի լսեմ զքէն թէ խորամանկ իմն իցես, և զօրքդ չարաբարոյ և ամբարտաւան, որպէս եւ իրքս որ առաջի կան ցուցանեն. (քանզի զթշնամի զոմն հասարակաց օգտի առ քեզ թագուցեալ պահես և ի նմին ցայժմ դևս՝ դէտ ակն կալեալ ելից պատերազմին), մեզ շատ և բաւական է դիցն օգնականու-

---

(*) Տակիտոս կըսէ թէ՝ հայեր կարհամարհէին զՀըռովմայեցիս. շատ իրաւունք ունէին անարգել զիրենք *բարբարոս* կոչողներ:

*թիւն՝ զի զամենեսին առնիցեմք սատակաջինջ։ Այլ եթէ այլ ինչ բաշխօք բախտից կամիցեն, քանզի նոցա զօրութիւն կամք դիցն են, հանդարտութեամբ և քաջութեամբ տարայց։ Սակայն այժմ իսկ գիտակ լեր թէ (յայնժամ) ի հիմանց այրեալ տոչորիցի տուն քո և քակեալ Հայոց տէրութիւն՝ եղիցես յաւելուած կամ արբանեակ պարսկական իշխանութեանն**»։

---

(*) Ո՞ւր է Խորենացւոյ Յուլիանոսն որ *Տիրանայ* հետ Պարսից վրայ կերթայ, *անոր պատկեր կուտայ որ եկեղեցւոյ մէջ կախէ*, Յուսիկ կաթողիկոսը զպատկեր կը յափշտակէ Տիրան թագաւորին ձեռքէն, կը կոխոտէ կը փշրէ. ասոր համար արքային հրամանաւ կսպաննուի գանակոծմամբ։ Այս ամենը երեւակայական զրոյցներ են՝ ինչպէս տեսնուեցաւ։ Խեղճ Տիրան ոչ եւս թագաւոր էր Յուլիանոսի ատեն, զուգէ մեռած ալ էր։

Ահա Յուլիանոսի նամակն առ Տիրան (ըստ Խորենացւոյ).

"Ինքնակալ Յուլիանոս ծնունդ Ենաքայ. Արամազդայ որդի, եւ ճակատագրեալ յանմահութիւն, Տիրանայ մերում գործակալի խնդալ։

Զզօրս զոր արձակեցեր ընդ մեզ, առեալ զօրավարին նոցին՝ ի բաց դարձաւ, եւ մեք բաւական էաք յանձին զնդացս մերոց զհետ առաքել՝ ունել զնոսա, այլ թողլ տուաք վասն երկուց պատճառաց. առաջին՝ զի ասիցեն զմէնջ Պարսիկք, եթէ բռնութեամբ եւ ոչ կամաւ ածէ զզօրսն. երկրորդ՝ փորձել զքո միամտութիւն։ Արդ եթէ ոչ ի քոյ կամացդ արար նա զայն, սատակեսցես զնա ազգաւ իւրով՝ առ ի չթողուլ նմա մնացորդ. ապա թէ ոչ, երդուեալ ի Դիս, որ զթագաւոր-

*Արշակ կը խոստանայ օգնել. Յուլիանոս կըս-
պասէ. Արշակ կուշանայ։ Կայսրը ուր ուրեմն կը
տեսնէ գունդ մը՝ որ դէպ իրեն կուգայ, կը
կարծէ թէ Արշակայ խրկածն է այն։ Եւ որով-
հետև թշնամին կսպառնար յարձակիլ, Յուլիանոս
ճակատ կը յարդարէ և կը բաղխի թշնամւոյն յու-
սալով թէ Արշակայ գունդ ալ վաղվաղակի հաս-
նելով՝ պիտի ընկճեն երկու դաշնակիցներն
զՊարսիկս։ Աւա՜ղ որ առ ինքն դիմողները Ար-
շակայ զինուորները չէին՝ այլ թշնամիք։ Այս-
պէս Յուլիանոս ամեն կողմէ պաշարուելով պար-
սիկներէն՝ քաջութեամբ կը պատերազմի, և ո-
րովհետև ինքն իսկ անճապարանօք անզրահ մտած
էր ի ճակատ՝ կը զարնուի, և իր վրանը կը փո-
խադրուի՝ ուր հոգւոյ անմահութեան վրայ խօ-
սելով իւր բարեկամաց հետ՝ կը մեռնի*։*

րութիւնս շնորհեաց մեզ, եւ յԱթենաս՝ որ զյաղթու-
թիւնն, զի ի դառնալն մերում՝ անպարտելի զօրութեամբ
վանեսցուք զքեզ եւ զաշխարհդ»:

Ընթերցողք ալ բաղդատեն այս տղայական գրուածը
Յուլիանու լուրջ, վեհ եւ անխռով ոգւոյ արդիւնին հետ
եւ տեսնեն թէ մէկ բառ մ'իսկ կը նմանի՞ անոր:

(*) Յուլիանոս կարծելով թէ խարխուլ Հռովմէա-
կան պետութիւնն անկմանէն փրկելու համար՝ աւելի
նպաստաւոր էր Հռովմայեցւոց նախնի կրօնը՝ բազ-
մաստուածութիւնը՝ քան զքրիստոնէութիւն, բայց բը-
նաւ չվնասեց քրիստոնէից եւ ոչ անոնց դէմ ամենաթեթեւ
հալածանք մը հանեց: Ընդ հակառակն՝ քրիստոնեայ նա-
խորդ կայսերած աքսորած քրիստոնեայ այլ եւ այլ կու-

**12.** Յուլիանոսի մահէն վերջ՝ Յոբիանոս բանակին ընտրութեամբ անոր յաջորդելով՝ ամօթալի դաշինք մը կնքեց Շապհոյ հետ՝ և անոր թողուց Հայաստանի գերիշխանութիւնը, յանկոյս Տիգրիսի հինգ գաւառներ, և բազմաթիւ բերդորայք՝ որ կայսրութեան պատուարն էին. (364)։ Զայս կը հաստատէ նաև Բուզանդ։

«Ապա ամս ութ, յետ գնալոյն փախչելոյն արքային Հայոց Արշակայ ի թագաւորէն Պարսից Շապհոյ, լուռ լինէր թագաւորն Պարսից ի թշնամութենէ. և խօսէր համակ ողոքով և աղաչէր զԱրշակ արքայ Հայոց՝ սիրով հաշտ և միաբան կալ ընդ նմա յուխտի խաղաղութեան։ Վասն զի ի մեծ վտանգ շտապի էր թագաւորն Պարսից ստէպ ստէպ յանդադար պատերազմացն ի թագաւորաց անտի Յունաց։ Իսկ Արշակ արքայ Հայոց ոչ ինչ կամէր անսալ նմա, և ոչ հուպ ինչ լինել ի նա. և յղեալ դեսպանս, և ոչ ինչ տալ պատարագս ընծայից, և ոչ հուպ ինչ կամ մօտ լինել ի նա բնաւին. և զանունն անգամ նոցա ոչ կամէր լսել։ Իսկ թագաւորն Պարսից ստէպ ստէպ յղէր պատարագս առ նա, առաքէր դեսպանս։

---

սակցութեանց մարդիկ դարձուց յաքսորանաց: Սուտ են Յուլիանոսի վրայ տարածայնուած զրոյցք. ինչպէս նաեւ սա թէ՝ "մեռած ժամանակ ձեռքով արիւն առաւ եւ յերկինս նետեց ըսելով՝ խմէ Գալիլեացիդ„: Տես եւ տիեզ. պատ. Գաբրճեան:

Եւ ինքն հեպհեպ կռուէր ընդ թագաւորսն Յունաց*»:

«Այլ իբրև եղև խաղաղութիւն ի մէջ թագաւորացն Յունաց և ի մէջ թագաւորին Պարսից Շապհոյ, ուխտից նամակ գրեալ և կնքեալ տայր թագաւորն** Յունաց թագաւորին Պարսից: Եւ գրեալ էր յուխտից նամակին այսպէս. Ետու քեզ, ասէ, զՄծբին քաղաք՝ որ է յԱրուեստանի, և զՄիջագետս Ասորոց և մէջ աշխարհին Հայոց՝ ձեռընթափ եմ, ասէ***, թէ կարասցես յաղթել նոցա և արկանել ի ծառայութիւն, ես ի թիկունս ոչ եկից նոցա:

Արդ ի նեղ ուրեմն անդեալ թագաւորին Յունաց և ի նեղին վշտի՝ զայս ձև օրինակի բանիցն կնքէր մուրհակ, և տայր թագաւորին Պարսից. և ապա ճողոպրէր ի նմանէ****»:

Ուրեմն Արշակ իրաւունք ունէր՝ խորամանկութեամբ, շրջահայեցութեամբ վարուելու Հռովմայեցւոց նկատմամբ. վասն զի հակառակ Հայոց հաւատարիմ դաշնակցութեան՝ Հռովմայեցիք միայն իրենց շահուն համար՝ զՀայաս-

(*) Բուզանդայ ակնարկած Յոյն թագաւորներն են, Կոստանդ, Յուլիանոս եւ Վաղէս՝ որոց ժամանակակից էր Արշակ:

(**) Յոբիանոս.

(***) Տես եւ տիեզ. պատմ. համ. Տիւրիւի, հատուած 32: Խոր. գլ. ԳԺԲ:

(****) Բուզ. դպր. Դ. գլ. ԻԱ:

տան Պարսից թշնամի ընելէ վերջ՝ ղայն լքին վատաբար, և անոր կործանման պատճառ եղան։

Քրիստոնեայ Հռովմայեցիներէն անաստուած յորջորջուած Շապուհն բիւր անգամ նախամեծար չէ՞ր մեր ազգին համար՝ զի Տիրան թագաւորին վրայ սէր ունենալուն համար ազատեց զնա ի հիւսիսային բարբարոսաց։

«Բայց Շապուհ Որմզդեան առ. Տիրան մեր արքայ առաւել սէր հաստատեաց. մինչև փօրա-ւիզ օգնականութեան եղեալ թարիէ զնա յարձակմանէ հիւսիսականացն ազգաց, որ միաբանեալ ելին արտաքս քան զկապանն Ձորայ, և բնակեցան ի սահմանս Աղուանից ամս չորս»։

13. Արդ Շապուհ Հռովմայեցիներէն ազատելով իւր վրէժխնդրութիւնը դարձուց Արշակայ դէմ՝ և մեծ բանակ մը ղրկեց Հայաստանի վրայ՝ Ատրպատականի կողմէն։ Վասակ Պարսից դէմ երլաւ վաթսուն հազարով չարաչար զարկաւ վանեց զանոնք։ Արշակայ ընդդէմ Պարսից մղած երկարատև պատերազմներն սկսած էին։

«Այլ ի բրև եղև խաղաղութիւն ի մէջ թագաւորին Յունաց և ի մէջ թագաւորին Պարսից, այնուհետև կազմէր զզօրս իւր թագաւորն Պարսից Շապուհ, և խաղաց ի վերայ Արշակայ արքային Հայոց մարտի պատերազմաւ։ Իսկ սահմանապահ.քն թագաւորին Հայոց որ նստէին ի

Գանձակ Ատրպատականի, վաղ ազդ առնէին
նմա զիւրան մինչչեւ հասեալ էր նա ի սահմանս
Ատրպատականի։ Ապա իբրեւ զայն զգայր Թա-
գաւորն Հայոց Արշակ, հրաման տայր Վասակայ
իւրում սպարապետին՝ կազմել զամենայն զզօրս
իւր, և հասանել ի դիմի հարկանել Թագաւորին
Պարսից Շապհոյ։ Ապա արագ ժողովել ի մի
վայր, հանդէս առնէր Վասակ սպարապետն ամե-
նայն զօրաց Հայոց. և գտան հեծելազօր սպառա-
զէնք կուռ վառեալք նիզակաւորք համակ վաթ-
սունբիւր*, միասիրտք միաբան միամիտք։ Եւ հան-
դերձ նոքօք յառաջ խաղայր սպարապետն Հայոց
Վասակ հասանէր, բախեալ ի դիմի հարկանէր Թա-
գաւորին Պարսից։ Առ հասարակ զօրսն զամենայն
հարկանէին ի սուր սուսերի իւրեանց. և միաձի ճո-
ղոպրեալ արքայն Պարսից Շապուհ փախչէր։ Սո-
քա հասանէին գերէին այրացուեր առնէին առ
հասարակ զերկիրն Պարսից. և ինքեանք կային
ունէին զճակատուն տեղի, այսինքն զսահմանս
Պարսից պահէին**»։

Յոբիանոս կայսր քանի մ'ամիս միայն ապ-
րեցաւ իւր խայտառակ դաշնադրութեան վրայ,
մեռաւ ճամբան և իրեն յաջորդեց Վաղէս։

(*) Մեզ այնպէս կը թուի որ՝ այս *բիւր* թիւերը
եթէ հազար հատուին՝ Բուզանդայ գրած զօրաց քանա-
կութիւնը ճշդուած կ'ըլլայ։ Հաւանական է՝ որ նախնիք
հազարի տեղ երբեմն *բիւր* բառը կը գործածէին։

(**) Բուզ. դպր. Դ. գլ. ԻԱ։

Այս դիւապաշտ և կախարդահատ կայսրը՝ անտարբեր դիտեց իւր դաշնակից քաջ Արշակայ ոգի ի բռին մաքառումը ընդդէմ Սասանեան ահեղ զօրութեան։

Սակայն տանուտերական դրութիւնն սկսած էր ցուցընել իւր կէս անկախութեան պտղաւեր հետևանքը։ Մերուժան Արծրունին պատամբելով Արշակէն գնաց յարեցաւ Շապհոյ։ Եւ որպէս զի Պարսից արքային վստահութիւնը կատարելապէս գրաւէ՝ ուրացաւ քրիստոնէութիւնը և խոստացաւ Շապհոյ բոլորով սրտիւ ծառայել նմա ընդդէմ Արշակայ։ Այնուհետև Շապուհ մեծ օժանդակութիւն մ'ունեցաւ ի Հայաստան ըրած իւր արշաւանաց մէջ։

Քսանըվեց անգամ Շապուհ յարձակեցաւ ի Հայաստան՝ և ամեն անգամ սոսկալի կոտորածով ետ մղուեցաւ իւր բանակը։ Մէկ անգամ միայն՝ մինչ Արշակ բանակ դրած Ատրպատականի սահմանին վրայ Թշնամւոյն կսպասէր՝ Պարսիկք վատ Մերուժանայ առաջնորդութեամբ Հայոց բանակին կռնակէն՝ Աղձնեաց, մեծ Ծոփած կողմէն յարձակելով աւեր ու ապականութիւն սփռեցին իրենց ճամբուն վրայ, հասան ի Տիգրանակերտ զայն առին, քանդեցին ու բնակիչները գերի վարեցին. անտի անցան գնացին Անի ամուր բերդին վրայ. Մերուժանայ մեքենայութեամբ տիրեցին ամրոցին, կողոպտեցին Հայ Թագաւորաց գանձերը որ հոն պահուած էին, Արշակունի ար-

*քայլից չիրիմները քանդելով բրելով բոլոր ոսկորները հանեցին* և Բասենու կողմէն յառաջ կը խաղային Արշակայ բանակին ի Թիկանց զարնելու։*

*Մինչ այս մինչ այն դուժկան կը հասնի առ Արշակ՝ թէ ի զուր այդտեղ ճակատէն կսպասես թշնամւոյն՝ նա ի Թիկանց յարձակեցաւ, քանդեց ապականեց զաշխարհ և այժմ քու վրադ կուգայ։*

*Երբ Արշակ և իւր զօրավար կիմանան զայս՝ հանդէս կընեն իրենց զօրաց և կը տեսնեն որ վաթսուն հազար պատերազմող ունին, միամիտ եւ միասիրտ՝ որք մինչեւ իրենց վերջին շունչը պատերազմել կուխտեն իրենց երկրին ընտանեաց եւ կրօնի վրայ**:*

*Բայց Վասակ ետ կը թողու զԱրշակ Մարաց երկիրը ամուր տեղ մը***, յառաջ կը խաղայ, կը հասնի Պարսից բանակին յԱյրարատ գաւառ, գիշերանց կիյնայ անոնց վրայ, ահաւոր կոտորած*

---

(*) Ըստ Բուզանդայ՝ Պարսիկները այս ոսկորները կը տանէին՝ որպէսզի ըստ իրենց կարծեաց՝ “Հայոց աշխարհի քաջութիւնն եւ փառքն ու բաղդը ի Պարսս երթան„:

(**) Տես. Բուզ. դպր. Դ. գլ. ԽԴ:

(***) Շապուհի նպատակն էր՝ նախ զԱրշակ բռնել եւ ապա երկիրը նուաճել: Աւա՛ղ որ անմիտ նախարարք իրենք իսկ գործիք եղան մեր հայրենեաց թշնամւոյն ձեռքը:

մը կ'ընէ այնպէս որ ըստ Բուզանդայ՝ Շապուհ հազիւ միաձի կը ճողոպրի: Վասակ եռ կառնու ամբողջ աւարը և գերիները և յաղթանակաւ կը դառնայ առ Արշակ։

Այնուհետև Արշակ և իւր զօրավար Վասակ բանակ դնելով երկրին երկու դրանց՝ Աղձնեաց և Ատրպատականի սահմանները պահպանութիւն կընեն։

Արշակայ ընդդէմ Պարսից մղած քսանըվեցէն աւելի յաղթանական ճակատամարտները՝ անոնց տեղերուն, երկուց կողմանց զօրավարաց անուամբ մի ըստ միոջէ նկարագրուած են ի Բուզանդայ։ Խորենացին միայն Տիգրանակերտի և Անւոյ ի Պարսից առումը կը յիշէ տարբեր եղանակաւ։ Դարձեալ մինչ Բուզանդ ճիշտ եօթանասուն անգամ կը յիշատակէ Մամիկոնեան Վասակայ՝ Արշակայ սպարապետին անունը որ ստուգիւ Գոնցէն և Դիւռէնն է, ու պարծանք իւր ցեղին՝ Խորենացին մէկ անգամ միայն կը յիշէ զՎասակ իբրև զինակիր Արշակայ՝ որ կը ղրկէ զնա (զՎասակ) սպաննել զնենգաւոր Տիրիթը և իւր Վարդան եղբայրը՝ որ «Արշակայ յանդիմանութեան չկրնալով համբերել եղաւ կերթար առ Շապուհ»։

14. Ի՞նչ է Խորենացւոյ այս լռութեան պատճառը Բուզանդ ինքնիրմէ՞ստեղծեր է Արշակայ և Վասակայ կատարած այնչափ նշանաւոր գործերը։ Բուզանդ օտար պատմիչն՝ որ Արշակայ

կենդանութեանը չգրեց իւր գիրքը՝ ի՞նչ շահ ունէր այնչափ սուտեր և մտացածին քաջագործութիւնք հնարելով՝ պանծացնելու զԱրշակ զՎասակ և զՀայոց ազգը միանգամայն։ Այս խնդրոյն լուծումը ըստ իս սա՛ է։

Հայերը սպարապետութեան երկու տոհմ ունէին՝ Բագրատունի և Մամիկոնեան*։ Արդ, Բուզանդայ ամբողջ պատմութեան մէջ՝ այսինքն Խոսրով Բ. Կոտակն անուանեալէն մինչև Հայոց թագաւորութեան բաժանումը՝ Արշակ Գ. և Խոսրով Գ.՝ շարունակ Հայոց սպարապետութեան պաշտօնը վարած է Մամիկոնեան տոհմը։ Միայն Վարազդատ՝ իմանալով թէ՝ Մուշեղ Մամիկոնեանի խորհրդո՛վ Հռովմայեցիք սպաննեցին զՊապ՝ սպաննել տուաւ զՄուշեղ և անոր փոխանակ զօրավար կարգեց Բատ Սահառունին։ Բագրատունեաց ցեղին այսպէս երկար ժամանակ սպարապետութեան պաշտօնէն հեռի մնալէն այնպէս կերևի թէ այս պատիւը դէթ գործնական կերպով առնուած էր այդ տոհմէն։ Եւ որովհետև Խորենացին՝ Սահակ Բագրատունի մեծ հայրենասէր ասպետին խնդրանօք և *ստիպմամբ* կը

---

(*) (Արձակեցին) զԲագարատ *մեծ իշխանն սպարապետութեան*: Արձակեաց թագաւորն (Խոսրով) ի վերայ նոցա զՎաչէ որդի Արտաւազդայ, զնահապետ Մամիկոնեան տոհմին յազգէ սպարապետութեան Հայոց: Բուզ. Գ. գլ. Դ. Գ. գլ. Դ:

*գրէր իւր պատմութիւնն՝ ուստի իւր մեկենասը չվիրաւորելու համար՝ մոռացման տուած է զՎասակ, իւր գործերը և Մամիկոնեան տոհմին սպարապետութեան պատիւը՝ այս նպատակաւ է նաև՝ ըստ իս՝ որ զանց առած է Զոնակի կաթողիկոսութեան կարևոր միջադէպը՝ խնայելով մեծին Սահակայ դիւրազգացութեան։ Ծիշդ իւր անմահ մեկենասին ի պատիւ հնարած կը թուի Խորենացին Մերուժանայ մահն Սմբատ Բագրատունի սպարապետին ձեռօք՝ որ իբր թէ գնչուներուն հրաշէկ շամփուրը Մերուժանայ գլուխը դնելով կ'ըսէ. «Պսակեմ զքեզ, Մերուժան, քանզի ի խնդիր էիր թագաւորել Հայոց, և ինձ ասպետիս պարտ է զքեզ պսակել ըստ սովորական իշխանութեան իմոյ Հայրենեաց*»:*

*Մերուժանայ այս պսակումը և մահը տեղի կունենայ ըստ Խորենացւոյ՝ Պապայ ատեն՝ Ձիրաւի ճակատամարտէն յետոյ. մինչ ըստ Բուզանդայ չարագործ Արծրունին դեռ կայրի Պապէն, Վարազդատէն յետոյ իսկ. և ուր ուրեմն կըսպաննուի Մանուէլ Մամիկոնեան սպարապետէն՝*

---

(*) Բագրատունեաց տոհմին թագադրութեան պատիւը կը հաստատէ եւ Բուզանդ: "Առնէր հարսանիս եւ եղբօր նորին Վաղարշակայ՝ եւ տայր նմա զդուստր ասպետին Բագրատունւոյ ի Սպեր գաւառէ՝ որ թագաւորն թագակապն լեալ էին եւ բնմէ ազգին թագաւորութեանն Արշակունւոյ„: Բուզ. Ե. գլ. ԽԴ:

*Պապի երկու որդւոց՝ Արշակայ և Վաղարշակայ իշխանութեան ժամանակ**։*

*Թէ ինչո՞ւ Խորենացին բնաւ չյիշատակէր Բուզանդայ նման մեծ պատմագիր մը՝ և մասնաւոր գովեստով շատ անգամ կը յիշէ զԱգաթանգեղոս՝ ու իր ընթերցողներն առ նա կը յղէ. այս հարցն ալ լուծել դիւրին է։*

*Բուզանդ Ագաթանգեղոսի պատմութեան շարունակողն է. Խորենացին Բուզանդէն յետոյ գրեց իւր պատմութիւնը, հետևաբար չէ կարելի որ զայն տեսած չ'ըլլայ, մանաւանդ որ յայտնապէս կը տեսնուի՝ թէ Խորենացւոյ պատմութեան աղբիւրներէն մին Բուզանդն եղած է։ Արդ եթէ Խորենացին յիշէր զԲուզանդ՝ պիտի չկրնար հերքել անոր պատմածներուն խիստ մեծ մասը՝ որ հակառակ են իւր պատմութեան։ Եւ որովհետև Խորենացին՝ գուցէ իւր ժամանակին ազգային վիճակին նայելով՝ հայրենասիրական պարտք մը համարած է անշուշտ՝ Բուզանդէն տարբեր պատմել՝ ուստի անոր անունը բնաւ չէ յիշատակած***։

**15.** *Սակայն Մեսրուժանայ տուած չար օրինակը շուտով իրեն արժանի հետևողներ ունեցաւ։*

---

(*) Տես Բուզ. դպր. Է. գլ. ԽԹ:

(**) Խորենացւոյ այս տեսութիւնը հարկ չէ ըսել թէ սխալ էր՝ եւ *ոչ հայրենասիրական:*

Նախարարներ ձանձրացեր էին պատերազմելէ իրենց կենաց ընչից և պատուոյ վրայ. ձանձրացեր էին ազգային անկախութենէն. թողին մի առ մի իրենց քաջ արքայն Արշակ՝ որ այնքան երկարատև պատերազմներէ և իւր թագաւորութեան ամբողջ ժամանակն բանակի մէջ անցունելէ յետոյ՝ տակաւին աննկուն խրոխտ կեցած էր և կուզէր կռուել ցյետին շունչ ընդդէմ գոռոզ Սասանականին։

Տիրադաւ Նախարարներ գնացին առ Մեծն Ներսէս և յայտնեցին նմա թէ այլևս պիտի չօգնեն Արշակայ։ Ի զուր այս սքանչելի մարդը յորդորեց աղաչեց զնախարարս որ ետ կենան իրենց ազգակործան որոշումէն, չլքանեն իրենց բնիկ տէրը, իրենց հայրենիքը, ընտանիքը, և չթողուն եկեղեցիները կոխան լինել Պարսից. անմիտ ապստամբները արհամարհեցին այս երկնային ծերունւոյն աղաչանք ու պաղատանքը, ոմանք կորան իրենց բերդերը քաշուեցան, այլք գնացին Շապհոյ ընծայեցին իրենց սուրը։

Շապուհ անօգնական տեսնելով զԱրշակ՝ դեսպան ղրկեց առ նա ընծայներով՝ աղաչելով զնա՝ որ իրեն տեսութեան երթայ՝ որպէսզի խաղաղութեան դաշինք կռեն, և այնուհետև իբրև բարեկամ ապրին։ Արշակ դիւրահաւան մարդ չէր. հաստատուն երդում պահանջեց Շապուհէն՝ որպէսզի անկասկած երթայ առ նա։ Շապուհ Պարսից օրինաց համեմատ բերել տուաւ

*աղ՝ կնքեց վարազ մատանեաւ՝ որ նշան էր անսուտ երդման Պարսից, և ղրկեց առ Արշակ։*

*Հայ մեծամեծները երբ տեսան այս մեծ երդմնագիրը, առաւել ևս ստիպեցին, բռնադատեցին զԱրշակ որ ելնէ երթայ ի Պարսկաստան։ Արշակ կամայ ակամայ ելաւ, առաւ իր հետ իւր քաջ սպարապետ և դայեակ Վասակ և գնաց առ Շապուհ։*

*Ի սկզբան Պարսից արքայն պատուով վարուեցաւ Արշակայ հետ. Բայց օր մը ճաշի ժամանակ յանկարծ զայրանալով Շապուհ՝ հրաման ըրաւ շղթայով պրկել Արշակայ ձեռք և ոտք՝ և անոր պարանոցին վրայ երկաթէ անուր դնելով տանել Անյուշ բերդը, հոն չարաչար տանջել՝ մինչև որ մեռնի։ Այդ մահաստուեր բերդին մէջ Արշակ սոսկալի տանջանօք գլխատուեցաւ՝ ըստ Ամիանոսի, կամ անձնասպան եղաւ, ըստ Բուզանդայ։ Շապուհ նոյնպէս մորթել տուաւ զՎասակ և անոր մորթը խոտով լեցընել տալով ղրկեց յԱնուշ բերդ։*

*«Զերեսուն և զչորս ամս* ետուն պատերազմ երկիրս Հայոց ընդ թագաւորին Պարսից, և յետ այնորիկ ձանձրացան պարտեցան լքան*

(*) Բուզանդ Արշակայ երեսուն տարուան թագաւորութեան եւ պատերազմաց վրայ շատ կը պնդէ. գուցէ այս թիւը ճիշդ ելնէ, եթէ Խոսրով Բ.ի եւ Տիրանայ ընծայուած թագաւորութեան ժամանակները կարճեցուին։

աշխատեցան երկոքին կողմանքն։ Եւ սկսան սոր-սորել գնալ ի բանակէն Հայոց թագաւորին. թո-ղին զխուրեանց արքայն Արշակ։ Բայց նախ այսմ գնալոյ սկիզբն առնէին մեծամեծ աւագանին։ Նախ բդեաշխն Աղձնեաց, և Նոշիրական բդեաշխն, և Մահկեր տանն, և Նիհորականն, և Դասընտ-րէին, և ամենայն նախարարութիւն Աղձնեաց. և զօրն և տունն տոհմին Աղձնեաց կողմանն ապս-տամբեցին յարքայէն Հայոց Արշակայ, և չոգան կացին առաջի արքային Պարսկաց Շապհոյ. և պարիսպ ածէին ի Հայոց կուսէ՝ որ Զորայն կո-չեն, դրունս դնէին և զատուցին զխուրեանց աշ-խարհն ի Հայոց։

Եւ յետ սորա Գուգարաց բդեաշխն, և յետ սորա Զորայ գաւառին տէրն, և Կողբաց գաւա-ռին տէրն, և ընդ նոսա Գարդմանաձորոյ տէրն։ Եւ որք մօտ էին ի նոսա կողմն այնր ձեռին, որ չուրջ էին զնոքօք, միահաղոյն ապստամբեցին ի թա-գաւորէն Հայոց Արշակայ. և չոգան գնացին առա-ջի կացին թագաւորին Պարսից Շապհոյ։ Ապստամ-բեցին յԱրշակայ արքայէն Հայոց ամուր գաւառն Արձախայ և ամուր գաւառն Տմորեաց, և ամուր աշխարհն Կորդեաց. ապա և տէր գաւառին Կոր-դուաց չոգաւ եկաց առաջի թագաւորին Պարսից։

Յետ այսորիկ ապստամբեաց ի թագաւորէն Հա-յոց և ձեռին իշխանութեանն տանն Հայոց թագա-ւորին, որ էր զԱտրպայական աշխարհաւն, յետս ե-կաց ի թագաւորէն Հայոց ամուր աշխարհն Մարաց.

յետս եկաց յարքայէն Հայոց և աշխարհն կաղ-
բից. եթող զարքայն Հայոց և գնաց Սաղամուտ
տէրն Անձտեայ, և ընդ նմա իշխանն մեծի Մո-
փաց. և գնացին առ Թագաւորն Յունաց։ Միջ-
նաշխարհն մնացեալքն յերկուացան յարքայէն, և
ոչ կամէին լսել Թագաւորին իւրեանց, ոչ մի ինչ
իրս՝ զոր նա կամէր։ Եւ գձձեցաւ Թագաւորու-
թիւնն մեծապէս։

«Եւ Վահան եղբայր Վասակայ սպարապե-
տին, ի Մամիկոնեան ի տոհմէն, անկաւ ի բանս
հրապուրանաց նա ի Մերուժանայ Արծրունւոյ
քեռորդւոյ իւրոյ։ Եւ սա ապստամբեաց յԱր-
շակայ յարքայէն Հայոց, և չոգաւ եկաց առաջի
Թագաւորին Պարսից Շապհոյ։ Իսկ Թիւն Հայոց
պակասեաց յայսմ հետէ և յապա։

«Ապա ժողովեցան մարդիկ ամենայն աշխար-
հին իշխանութեանն Թագաւորութեանն Հայոց,
և եկին առ մեծ եպիսկոպոսապետն Հայոց Ներ-
սէս, մեծամեծք նախարարք կուսակալք կող-
մակալք դաւառատեարք գործակալք և դասա-
պետք շինականաց։ Ի մի վայր եկեալ ժողովե-
ցան, խօսել սկսան ընդ Ներսիսի և ասեն. Դու,
տէր, քեզէն գիտես, զի այս երեսուն ամ է Թա-
գաւորին մերոյ Արշակայ զի ոչ մի ամ մեզ հան-
գիստ ոչ եղև ի պատերազմէ. և համակ սրով
և սուսերօք և ի սլաքս և ի տէգս նիզակաց
զքրտունս երեսաց մերոց ջնջեցաք։ Եւ արդ ոչ
կարեմք այսմ զժոյժ ունել, և ոչ այլ կարեմք

տալ ճակատս. զի լաւ է մեզ՝ թէ ծառայեսցուք մեք թագաւորին Պարսից որպէս ընկերքն մեր արարին, զի թողին զնա և գնացին առ թագաւորն Պարսից. և մեք սոյնպէս առնելոց եմք, զի ոչ այլ եւս կարեմք կռուել։ Թէ պէտ իցէ թագաւորին Արշակայ կռուել ընդ Շապհոյ, Վասակաւ և Անդոկաւ աներաւ իւրով տացէ պատերազմ. այլ յայսմիկ Հայոց աշխարհէս և ոչ մի այր ոչ ոք է երթալոց ի թիկունս օգնականութեան նորա։ Նմա եթէ պէտ իցէ տացէ պատերազմ, թէ պէտ մի. մեր թողեալ զնա՝ մեզ չէ փոյթ։

Իսկ սուրբն Ներսէս խօսէր ընդ նոսա որպէս օրէն էր, եթէ տեսէք և քաջ զմտաւ ածէք, և յիշեցէք զբանն տեառն պատուիրանին միաբանութեամբ որպէս պատուիրացն ծառայից՝ հնազանդ կալ տերանց իւրեանց։ Զի ամենեքեան դուք աւադիկ կայք և վկայէք, մանաւանդ զի ամենեքեան դուք կեցեալ էք յազգէդ Արշակունոյ. ոմանք ի ձէնջ գաւառատեարք լեալք ի նոցանէն, և ոմանք մեծամեծք աշխարհաց, ոմանք աւագ աւագ աւանաց գեղից և գանձուց տեարք լեալ էք, և պէսպէս դաստակերտացն։ Զի թէպէտ և առ արարիչն Աստուած յանցաւոր իցեն պիղծ ազգն Արշակունեաց, սակայն զձեզ կեցուցեալ զամենեսեան և յաղբոյ թօթափեալ է, զոմն գործով, զոմն պատուով, զոմն իշխանութեամբ, զոմն գործակալութեամբ։ Զի թէ-

պէտ և առ Աստուած մեղաւոր է Արշակ արքայ և պարտական է տոկոսեաց արարչին իւրոյ՝ առ ի տանել նմա վրէժս, սակայն Աստուած վասն բազում և անչափ մարդասիրութեան իւրոյ՝ խնայեաց ի նա, և վասն նորա ի ձեզ(*)։

Եւ դուք աւաղիկ կամիք անկանել հեթանոսաց ի ծառայութիւն, և կորուսանել զկեանս ձեր յԱստուծոյ, և մերժել զբնակ տեարսն ձեր՝ զորս տուեալ է ձեզ յԱստուծոյ, և օտար տերանց ծառայել, և նոցին անաստուած կրօնիցն ցանկալ։ Բայց լա՞ւ լիցի ձեզ զնոյն սիրել և յանձն առնուլ, և նմին հաւանել, և մերժել յանձանց ձերոց զարարչապաշտ թագաւորն։ Զի թէ բիւր չար իցէ Արշակ, սակայն աստուածապաշտ է. և եթէ մեղաւոր եւս իցէ, սակայն թագաւոր ձեր է. որպէս և դուքդ ասացէք առաջի իմ, թէ այսչափ ամք են՝ զի մարտեայք եւս ի վերայ անձանց ձերոց եւ հօրւոց, ի վերայ աշխարհի, ի վերայ կանանց եւ որդւոց ձերոց: Եւ որ մեծն է քան զամենայն ի վերայ եկեղեցեաց ձերոց, ի վերայ ուխտի հաւատոց ձերոց, զոր ունիմք ի տէր մեր Յիսուս Քրիստոս. և համակ տէր եւ ձեզ յաղթութիւն անուան իւրոյ։ Եւ արդ կամիք փոխանակ Քրիստոսի արարչին ձերոյ՝ ծառայել ձեզ անաստուածն մոգութեան օրինացն և նոցուն

(*) Մեծ հայրապետին այս խօսքերն ակնարկութիւն են այն յաղթութեանց զորս միշտ տարաւ ընդդէմ Շապհոյ քաջն Արշակ:

*պաշտօնէիցն, ի թողուլ նախ զարարիչն մեր և զնորուն պատուիրանս՝ զոր պատուիրեաց ձեզ, միամիտ կալ առ տեարսն մարմնաւորս՝ զորս նորայն արարեալ է. դուցէ բարկացեալ տէր Աստուած ձեր, և խլիցէ զձեզ արմատաքի, և մատնեսցէ զձեզ հեթանոսացն ի չար ծառայութիւն ստրկութեանն մինչև յաւիտեան, և ոչ երբէք բարձցի լուծն ծառայութեան ի ձէնջ։ Եւ բողոքէք դուք առ տէր, և նա ոչ լսիցէ ձեզ. վասն զի անձամբ անկանիք դուք ի ծառայութիւն հեթանոս տերանց և անաստուած անգէտ մարդկան, ի ձեռս հեթանոս արանց տերանց խստասրտաց. և բազում չարի դիպեալ եղանիցէ առաջի ձեր, և ոչ կարիցէք ճողոպրել յայնմանէ*։*

*«Իսկ նոքա որ միանգամ էին ի մի վայր ժողովեալ, զաղաղակ հարկանէին. քարոզ կարդացեալ՝ միմեանց ձայն առնէին չփոթէին ամբոխէին և ասէին. Հա՛պա գնասցուք, ասեն, սփռեցարուք յիւրաքանչիւր տեղիս. զի այդմ բանից մեք ինչ ոչ կամիմք լսել»։ Սփռեցան յիւրաքանչիւր տունս իւրեանց։*

*Ապա Տապուհ արքայ Պարսից մեծաւ աղաչանօք և պատարագօք և հրովարտակօք և սիրով*

---

(*) Սուրբ Հայրապետին այս արտաշարժ, իմաստալից, ճարտար եւ համոզիչ ճառին առջեւ ականջը եւ սիրտը խցող անտարբեր անգիտաններն կարդարացնեն Յուլիանոս կայսեր խօսքն առ Արշակ թէ "զօրքերդ անհնազանդ եւ ամբարտաւան են":

զԱրշակ առ ինքն կոչէր, զի յայնմ հետէ արասցեն ի մէջ իւրեանց սէր և խաղաղութիւն և բարեկամութիւն մեծ։ Իսկ Արշակ արքայ թէպէտ պատերազմ կամէր տալ, այլ ոչ կամէին յանձն առնուլ այսմիկ ամենայն զօրքն աշխարհին Հայոց։ Ապա թէ կամաւ կամաւ՝ թէ ոչ կամաւ սակայն եդսիրտ՝ խոնարհութեամբ հրովարտակս առ Շապուհ արքայ Պարսից, որպէս վայելէ ծառայի առ տէր իւր, տալ։ Եւ առաքէր յիւրմէ Նմա պատարագս հաշտութեան»։

«Ապա յետ այսորիկ դարձեալ առաքեաց առ Արշակ արքայ Հայոց Շապուհ արքայ Պարսից, և ասէ. «Իսկ եթէ հաճ եմք ես և դու ընդ միմեանս, եկ տեսցուք զմիմեանս. և յայսմ հետէ իբրև զհայր և զորդի լիցուք ընդ միմեանս։ Ապա թէ ոչ տեսանես դու զիս, խնդրես զպատերազմ ի մէջ իմ և ի մէջ քո»։ Իսկ Արշակ խնդրէր հաւատարիմ երդումն ուխտին ի Նմանէն, զի յայսմ հետէ անկասկած երթիցէ առ Նա։ Եւ Նա ետ բերել՝ ըստ օրինացն հաւատարիմ երդմանց թագաւորութեանն Պարսից՝ աղ, կնքել վարազ նկարագիր մատանեաւ, և յղեաց։ Զի թէ իցէ և զայն երդման եւս զհետ ոչ եկեսցէ, ապա կազմ լիցի տալ ճակատս պատերազմի ի մէջ իւրեանց։

Իսկ զայն եւս յորժամ տեսին և լուան ամենայն մարդիկն երկրին Հայոց, ստիպեցին բռնաբոսեցին զիւրեանց թագաւորն զԱրշակ և չտա-

պեցին, զի յարիցէ գնասցէ երթիցէ յանդիման լիցի թագաւորին Պարսից Շապհոյ։ Ցայնմ հետէ, թէ կամաւ կամաւ՝ թէ ոչ կամաւ, յարեաւ թագաւորն Հայոց Արշակ, առ ընդ իւր զզօրավարն սպարապետն Հայոց զդայեակն իւր, խաղաց գնաց յերկրէն Հայոց յերկիրն Պարսից առ Շապուհ արքայ Պարսից. չոգաւ յանդիման եղև թագաւորին Պարսից Շապհոյ։ Իբրև տեսին զնոսա, արկին զերկոսեանն զարքայն Արշակ և զսպարապետն Վասակ, և պահէին զնոսա արձակ ի մէջ ազատագունդ փուշտիպան զօրացն։ Եւ կոչեաց արքայ Շապուհ զարքայ Արշակ, և իբրև զծառայ իւր պատուհասեաց զնա. և նա յանցաւոր և մահապարտ զանձն իւր առ նա համարեցաւ։ Դարձեալ անդրէն ի նոյն գունդ փուշտիպանաց ետուն զԱրշակ արքայ ի պահեստ*»։

Բուզանդ առասպելախառն զրոյց մը կը յիշատակէ՝ որ պատիւ է Արշակայ հայրենասիրութեան։ Պարսից թագաւորն ուզելով գիտնալ թէ Արշակ եթէ ի Հայաստան դառնայ՝ հաւատարիմ պիտի մնա՞յ Պարսից դաշնակցութեան թէ ոչ՝ վերստին պատերազմ պիտի գրգռէ Պարսից դէմ՝ խորհուրդ կը հարցունէ իւր դիւթերուն՝ որոնք խրատ կուտան Շապհոյ՝ Հայաստանէն քիչ մը հող և ջուր բերել տալ՝ և յանդէտս Արշակայ՝ անոր նստած տեղը անոնցմով յատակել։

---

(*) Բուզ. դպր. Դ. գլ. Ծ, ԾԱ. ԾԲ. ԾԳ։

Արդ, կ՚ըսեն, եթէ Արշակ այն հողուն յատակին վրայ նստած ժամանակ լեզուն փոխէ՝ և խիստ խօսի քեզ դէմ գիտցի՛ր որ եթէ Հայաստան երթայ՝ նորէն թշնամի պիտի ըլլայ Պարսից։

«Իսկ իբրև երեկոյ եղև ժամ ընթրեաց թագաւորին Պարսից, քանզի սովորութիւն էր Հայոց թագաւորին բազմական անդէն ընդ նմին առ նմա ի նորին տախտին արկանել բազմական, որպէս էին զի թագաւորն Պարսից եւ թագաւորն Հայոց ի միում տախտի բազմէին ի միում գահոյս։ Իսկ այն օր նախ զտող բազմականացն թագաւորացն*. որ անդն էին զամենեցունց կարգեցին. հուսկ յետոյ զկնի ամենեցունց ի ներքոյ բոլորին զԱրշակայ բազմականն առնէին, ուր զհայ հողն յատակն հարեալ էր։ Նախ ամենեքեան իբրև բազմեցան յիւրաքանչիւր չափու յետոյ ածէին բազմեցուցանէին զարքայն Արշակ։ Արդ եկաց բազմեալ ուռուցեալ վայր մի. իսկ յոտն եկաց, ասէ ցթագաւորն Շապուհ. «Իմ այդ տեղի, ուր դուդ ես բազմեալ. յոտն կաց այդի, թող ես այդր բազմեցայց, զի տեղի ազգի մերոյ այդ լեալ է. ապա եթէ յաշխարհն իմ հասից, մեծամեծ վրէժս խնդրեցից ի քէն**»։

(*) Կերեւի թէ կ՚ակնարկէ բազմաթիւ հարկատու իշխաններ՝ որք շատ անգամ Արեաց մեծ արքային կերթային՝ հարկ եւ ընծայ տանելու:

(**) Ի՛նչ անկախ, աննկուն ոգի. ի՛նչ ազնիւ, վեհ նկարագիր բարուց. Քանի՞ պատմական անձ ունինք ասոր հաւասար:

Ապա տայր հրաման Շապուհ արքայ Պարսից, բերել շղթայս և արկանել ի պարանոցն Արշակայ և յոտս և ի ձեռս նորա երկաթս, և խաղացուցանել զնա յԱնդմըշն՝ յոր Անյուշ բերդն կոչեն, և պնդեալ զնա մինչև անդէն մեռցի։ Եւ եղև ի վաղիւ անդր ետ հրաման Շապուհ արքայ, ածել զառաջեաւ իւր զՎասակ Մամիկոնեան զզօրավարն սպարապետն Հայոց մեծաց. սկսաւ պատուհասել զնա, քանզի էր Վասակ անձամբ փոքրիկ, ասէ ցնա արքայն Պարսից Շապուհ. «Աղուէս, դու էիր խանգարիչ՝ որ այսչափ աշխատ արարեր զմեզ. դու ես այն՝ որ կոտորեցեր զԱրիս այսչափ ամս, և զի՞ գործես. զմա՞հ աղուեսու սպանից զքեզ։ Իսկ Վասակ տուեալ պատասխանի ասէ. «Այժմ քո տեսեալ զիս անձամբս փոքրիկ, ոչ առեր զչափ մեծութեան իմոյ. զի ցայժմ ես քեզ առիւծ էի, և արդ աղուէս։ Բայց մինչ ես Վասակն էի, ես սկայ էի. մի ոտնս ի միոյ լերին կայր, և միւս ոտնս իմ ի միոյ լերին կայր. յորժամ յաջ ոտնս յենուի, զաջ լեառն ընդ գետին տանէի. յորժամ ի ձախ ոտնն յենուի, զձախ լեառն ընդ գետին տանէի*» Ապա հարցանէր թագաւորն Պարսից Շապուհ և ասէ. «Աղէ տուր ինձ գիտել, ո՞վ են լերինքն այնոքիկ՝ զորս դուն ընդ ունջ տանէիր»։

---

(*) Վսեմ խօսքեր, արժանի Աղեքսանդրի, Աննի-բալայ եւ Կեսարու:

*Եւ ասէ Վասակ. «Լերինքն երկուք, մի դու էիր, և մի թագաւորն Յունաց»։ Ապա ետ հրաման թագաւորն Պարսից մորթել զզօրավարն Հայոց Վասակ, և զմորթն հանել և լնուլ խոտով, և տանել ընդ նոյն բերդ յԸնդմըշն՝ որ Անյուշ կոչեն. ուր արգելլին իսկ զթագաւորն Արշակ*»։*

*Տապուհ առ Արշակ տուած իւր հանդիսաւոր երդումը վատաբար ջրելով՝ իւր ձեռքերը և պետութեան կնիքը Արշակայ և Վասակայ արեամբ մշտնջենապէս արատաւորելէ յետոյ՝ մեծ բանակ մը ղրկեց ի Հայաստան որ երթան, բրեն քանդեն և սպառապուռ կործանեն երկիրը**։*

*Եկան պարսիկները և գարնանաշայր հեղեղներու նման թափեցան լցին Հայոց դաշտերը և հովիտները։ Աւերեցին, գերեցին, գերփեցին, հիմնայատակ ըրին չէն աւաններ, ծաղկեալ քաղաքներ. Աւեր ծուխ ու արիւն միայն կը տեսնուէին այս գաղանաց հետքերուն վրայ։ Փառանձեմ Տիկինը տեսնելով այս արհաւիրք՝ առաւ իրեն հետ խումբ մը հաւատարիմ մարդիկ և իւր սիրեցեալ միակ որդին Պապ՝ ու ապաստանեցաւ Արտագերից ամուր բերդը։ Պարսիկները պաշարող գունդ մը թողին անոր շուրջը՝ և անցան զարկին կործանեցին. Արտաշատ, Վաղարշապատ, Երուանդաշատ, Զարեհաւան, Զարիշատ, Վան և*

(*) Բուզ. դպր. Դ. գլ. ԾԴ։
(**) Բուզ. դպր. Դ. գլ. ԾԵ։

Նախճաւան մարդաշատ և ճոխ քաղաքները. անոնց բնակիչները հայեր և հրեայներ՝ անասնոց անբաւ անեզր հօտի պէս քշեցին իրենց առջևէն դէպի Պարսկաստան։ Այս արշաւող բանակին մէջ կային դաւաճան հայեր՝ որոց կարգէն էր նաև Արշակայ մարդպետ ներքինին։ Այս մատնիչը գաղտնի դռնէ մ'եկաւ Արտագերս բերդը՝ ստիպելու զՏիկին որ անձնատուր ըլլայ։ Քաջասիրտ Փառանձեմ կերևի թէ սաստիկ ընդդիմացեր է և աղիողորմ լացով ողբով յաջողեր է այս վագրին ու անոր ընկերացող ուրիշ մատնիչի մը սիրտն ի գութ շարժելու իրենց բնիկ տիրոջ միակ որդւոյն վրայ։ Մարդպետը՝ որ խօսք տուած էր Պարսից բերդը և պաշարեալ անբաղդ Թագուհին անոնց յանձնելու՝ կերթայ և մէկ երկու օր ևս միջոց կը խնդրէ։ Այս միջոցին կը յաջողի Փառանձեմ պատանի արքայորդին փախցընել Հռովմայեցւոց կողմը։ Ահա այս պարագայէն առնելով մեր պատմիչք կը գրեն թէ՝ Պապ պատանդ էր ի Բիւզանդիոն։ Պարսիկներ տեսնելով որ Փառանձեմ անձնատուր չըլլար կատաղի յարձակմամբ կառնուն բերդը*։ Իսկ ըստ Բուզանդայ Տիկինը ի զուր սպասելով իւր որդւոյն՝ որ ամեն շաբթու պատգամաւոր կը ղրկէր գաղտուկ առ մայրն թէ՝ սպասէ, մայր, անձնատուր մի՛ ըլ-

---

(*) Տե՛ս եւ տիեզ. պատմ. Գաբրճեան Բ. հատոր. Արշակ Բ:

լար, քեզ օգնելու կուգանք՝ և տեսնելով որ իր մարդիկ բոլորն ալ ժանտամահով մեռան՝ բացաւ բերդին դռները և անձնատուր եղաւ։ Պարսիկները բռնեցին Տիկինը՝ և ինն օր ու ինն գիշեր բերդէն վար կրեցին հոն ի պահեստ դրուած արքայական գանձերը ու ամենը մէկէն տարին հասուցին ի Նախճաւան՝ ուր խռնուած խճողուած էր Հայաստանի անբաւ աւարը և գերեաց ամբոխը։ Անտի տարին գանձերը ի Պարսկաստան, իսկ գերիները՝ զոմանս յԱտրպատական և զոմանս ի Խուժաստան բնակեցուցին։ Դժբաղդ Փառանձեմ՝ ըստ Խորենացւոյ՝ տարուեցաւ յԱտրպատական և սայլի ցիցը հանուելով սպաննուեցաւ։ Իսկ ըստ Բուզանդայ՝ Շապուհ ուզելով թշնամանել Հայ ազգը և թագաւորութիւնը՝ զայն հրապարակաւ խայտառակել տուաւ՝ ու այնպէս սպաննեց։

Անօրէն Նախարարներն իրենց ընտանիքն անգամ չպաշտպանելով՝ փախստական գնացած էին աստ անդ։ Բոլոր երկիրը անտերունջ որս մնացեր էր Շապհոյ վրիժուց։ Երբէք արքայի պակասութիւն այսչափ զգալի չեղաւ ի Հայաստան, ոչ Ատրպատականեայց արշաւանաց, ոչ Մակեդոնական տիրապետութեան օրով, ոչ Հռովմայեցւոց պատերազմաց ժամանակ Հայաստան այսպիսի աղետից մատնեցաւ։ Հայաստանի կենսական զօրութիւնը մաշող սպառող սարսափի և արհաւրաց ամենէն առաջինն ու ուժգինն եղաւ

Արշակայ անկումը. աղետից մեծութենէ՛ն կը-մացուի մեծութիւնն Արշակայ՝ որոյ անձը թումբ կանգնած էր այն անհեղասաստ մրրկին դէմ՝ որ այնչափ տարի ի զուր կոծեց զայն։ Իբրև արքայ և իբրև զինուոր Արշակ իւր պարտքը կատարեց արիաբար. սուրբ է անոր յիշատակը մեզի համար. «Զի թէպէտև առ Աստուած իւր մեղաւոր է Արշակ, սակայն Աստուած վասն բազում և անչափ մարդասիրութեան իւրոյ՝ խնայեաց ի նա, և վասն նորա ի ձեզ». Այսպէս արձակում տուաւ Արշակայ թերութեանց՝ Հայաստանի մեծ վարդապետը։

Այո՛, Աստուած ամեն յանցանաց կը ներէ՝ բացի Հայրենեաց մատնութենէ։

**16.** Արշակայ եղերական մահուան վրայ Բուզանդայ գրած սքանչելի գլուխը՝ որ մեր նախնեաց գրականութեան անգին գանձերէն մին է՝ արժան կը համարիմք դնել աստ իւր ամբողջութեամբ։

«Այլ յայնմ ժամանակի[*] դեռ տակաւին եւս կայր կենդանի Արշակ արքայ Հայոց յերկրին իշխանութեանն Թագաւորութեանն Պարսից ի կողմանս Խուժաստանի յԱնդմըշն բերդին, այսինքն որ անուն Անյուշն բերդն կոչեն։ Եւ զայնու ժա-

---

(*) Պապայ թագաւորութեան ժամանակ։

մանկաւ խաղաղացաւ պատերազմ տալ Պարսից ընդ Հայս, զի Արշակունին թագաւորն Քուշանաց, որ նստէր ի Բահլ քաղաքի, նա յարոյց տալ պատերազմ ընդ Սասանականին Շապհու և թագաւորին Պարսից։ Եւ Շապուհ թագաւորն զամենայն զզօրսն Պարսից գումարեալ խաղացոյց տալ պատերազմ ընդ նմա, և զորս միանգամ ածեալ էր գերութիւն յերկրէն Հայոց զամենայն այրեձի գումարեալ՝ խաղացոյց ընդ ինքեան. և զներքինին անգամ թագաւորին Հայոց Արշակայ տանէր ընդ ինքեան ի գործ պատերազմին։

Եւ էր ներքինի մի Հայոց թագաւորին Արշակայ, ոստիկան հաւատարիմ լեալ՝ ներքինի սիրելի մեծի իշխանութեան և մեծի պատուի, և անուն Դրաստամատն։ Իսկ իբրև եղև պատերազմ ընդ թագաւորին Քուշանաց և ընդ թագաւորին Պարսից, չարաչար տարածէին զզօրսն Պարսից զօրքն Քուշանաց, և զբազումս կոտորեցին ի զօրացն Պարսից զօրքն Քուշանաց և զբազումս ձերբակալ արարին, և զկէս փախստականս հալածական առնէին։ Իսկ Դրաստամատն ներքինին, որ յամս Տիրանայ թագաւորին Հայոց և Արշակայ որդւոյ նորա թագաւորին Հայոց լեալ էր իշխան տան գաւառին և հաւատարիմ գանձուց Անգեղ բերդին, և ամենայն բերդացն արքունի՝ որ ի կողմանս յայնս. սոյնպէս և յերկրին Ծոփաց ի Բնաբեղ բերդին գանձքն լեալ էին ընդ

նովաւ, և բարձ նորա ի վեր քան զամենայն նախարարացն։ Եւ քանզի այս գործակալութիւն և մարդպետութիւն, որում հայրն կոչէին ներքինեաց՝ գործ լեալ էր ի բնէ ժամանակաց ի թագաւորութեանն Արշակունոյ, և զայս Դրաստամատ ներքինի զիշխանն զԱնգեղ տանն գերեալ տարեալ էր յերկիրն Պարսից ի ժամանակին յորժամ կալան զԱրշակ արքայն Հայոց։ Եւ այս Դրաստամատ էր յայնմ ճակատու, յորում վատթարեցին Քուշանքն զՇապուհ արքայն Պարսից։ Եւ Դրաստամատ գործեաց անհնարին քաջութիւն այնչափ կռուաւ ևս ի վերայ Շապհոյ արքային, և ապրեցոյց զնա ի մահուանէ. և բազումս ի Քուշանաց անտի կոտորեաց, և զբազում զախոյանից զգլուխս բերէր զառաջեաւ։ Եւ զՇապուհ թագաւորն Պարսից փրկէր ի նեղութենէն պատերազմին թշնամեաց անտի, ուր արգելլին զնա ի խուռն պատերազմին ի զօրաց անտի։ Իսկ իբրև եղև յորժամ դարձաւ Շապուհ թագաւորն Պարսից յերկիրն Ասորեստանի, և մեծ շնորհակալութիւն առնէր ներքինւոյն Դրաստամատայն վաստակոցն, և ասէր ցնա Շապուհ թագաւորն Պարսից. «Խնդրեա դու ինչ յինէն. զինչ և խնդրեսցես, տաց քեզ և ոչ արգելից»։ Եւ ասէ Դրաստամատ ցթագաւորն. «Ինձ ի քէն այլ ինչ ոչ պիտի, բայց տուր ինձ հրաման, զի երթայց տեսից զբնակ տէրն իմ զԱրշակ արքայ Հայոց։ Եւ առ մի օր, իբրև ես երթայց առ նա, հրաման

տուր՝ արձակել զնա ի կապանացն, և ես իշխեցից լուանալ զգլուխ նորա և օծանել, և ագուցանել նմա պատմուճան, և արկանել նմա բազմականս, և դնել առաջի նորա խորտիկս, և տալ նմա գինի, և ուրախ առնել զնա արուեստականօքն մի օր ճիշդ»։

Եւ ասէ Թագաւորն Շապուհ. «Խիստ են խնդրուածքդ, զոր խնդրեցերդ. զի յաւուրց ժամանակաց՝ յորմէ թագաւորութիւնս Պարսից կանգնեալ է, և բերդն այն Անյուշ բերդ կոչեցեալ է, չիք ոք մարդ եղեալ ի մարդկանէ՝ որ իշխեցեալ է յիշեցուցանել թագաւորաց զոր յայնմ բերդի եդեալ զոք է թագաւորաց, յիշելով զայն մարդ՝ որ յայնմ բերդի զոք եդեալ է, թող թէ զնա զայր թագաւոր և զիմ ընկեր կապեալ եդեալ յայնմ բերդի զհակառակորդն. քան մինչ աշխատ արարեր զմեզ, և դու աւադիկ զանձն ի մահ եդիր և յիշեցուցեր զԱնյուշն, որ ոչ էին լեալ երբէք օրէնք թագաւորութեանս Արեաց ի սկզբանէ։ Բայց զի վասն քո մեծ վաստակք են առ իս, զոր ինչ խնդրեցերն՝ երթ տուեալ լիցի քեզ. բայց քեզ արժան էր զօգուտ քո անձինդ խնդրել կամ աշխարհս կամ գաւառս կամ գանձրս։ Բայց յորժամ դու զայդ խնդրեցեր, անցեալ լիցիս զօրէնօք Արեաց թագաւորութեանս. երթ, տուեալ լիցի քեզ որ ինչ յինէնս խնդրեցեր փոխանակաց քոց»։

Եւ ետ նմա փուշտիպան մի հաւատարիմ. և

հրովարտակ՝ արքունի մատանեաւն, զի գնացեալ երթիցէ նա ի բերդն յԱնդմըշն, և զխարդ և կամք իցէ նորա, զոր օրինակ և խնդրեացն՝ արասցէ կապելոյն Արշակայ, որ յառաջ թագաւորեալն էր ի Հայս։ Եւ չոգաւ Դրաստամատն հանդերձ փշտիպանաւն և հրովարտակաւն արքունի յԱնյուշ բերդն, և ետես զտէրն բնակ. և արձակեաց զԱրշակ ի կապանացն երկաթեաց ի ձեռակապացն և յոտիցն երկաթոց և յանրոց պարանոցէն շղթայիցն սարեացն. և լուաց զգլուխ նորա, և լոգացոյց զանձն նորա։ Եւ ագոյց նմա պատմուճան ազնիւ. և էարկ նմա բազմականս, և բազմեցոյց զնա. և եդ առաջի նորա ընթրիս ըստ օրինաց թագաւորաց, և եդ առաջի նորա գինի որպէս օրէն էր թագաւորացն. սթափեաց զնա, և մխիթարեաց, և ուրախ առնէր զնա գուսանօք։

Եւ ի ժամ աղանդեր մատուցանելոյ՝ եդին առաջի նորա միրգ, խնձոր և վարունգ և ամիճ, զի կերիցէ. և եդին դանակ նմա, որպէս զի հատցէ և կերիցէ զխարդ և կամեսցի։ Եւ Դրաստամատ մեծապէս ուրախ առնէր զնա. կայր յոտն, և մխիթարէր զնա։ Իսկ յորժամ արբեցաւ, և գինին եկն զակամբ նորա, արբեցաւ, հպարտացաւ և ասէ. «Վա՜յ ինձ Արշակայ. այս ես*, և

(*) Թէպէտ Վենետկոյ տպագրութիւնը՝ հակառակ բոլոր օրինակաց ուղղագրած է՝ "Վ՛այ ինձ Արշակայ. *այսպէս եւ այս*„ սակայն ինձ թուի թէ օրինակաց զը-

այս, և յայսմ չափու և այս անց.ք անցին ընդ իս»։ Եւ զայս ասացեալ, զդանակն՝ զոր ունէր ի ձեռինն, որով զմիրգն կամ զամիճն կամէր ուտել, եհար ի սրտի իւրում. և անդէն սատակեցաւ և մեռաւ անդէն ի նմին ժամուն մինչ դեռ կայր ի բազմականին։ Իսկ յորժամ զայն ետես Դրաստամատն, յարձակեցաւ եհան ի նմանէ զնոյն դանակ, և եհար յիւրում կչտին. և անդէն մեռաւ և նա ի նմին ժամուն յայնմ*։

Արշակայ վրայ ողբերգութիւն գրելու հարկ չկայ. անոր պատմութեան վերջին մասը լացով և կոծով կը յորդի ծայրէ ի ծայր. իսկ այս գլուխը անհուն վայնասունի մէջ կիջեցնէ վարագոյրը։

---

բանը աւելի ուղիղ՝ աւելի իմաստալից է. միայն տող մը պէտք էր *ես* էն վերջ:

(*) Բուզ. դպր. Ե. գլ, Ե:

## ԳԼՈՒԽ ԵՐԿՐՈՐԴ

# ՊԱՊ

*1.* Պապի պատերազմներ ընդդէմ Պարսից: *2.* Հակառակութիւնք եւ զրպարտութիւնք ընդդէմ նորա: *3.* Մահ Մեծին Ներսիսի. թունաւորման տեսութիւնը: *4.* Կաթողիկոսութեան անկախութիւնը վերջնականապէս կը հաստատուի. Պապ տասնըհինգ դար առաջ կը կատարէ եւրոպական արդի բարեկարգիչ մեծ արքայից գործը: *5.* Իւր մահուան կեղծ պատմութիւնն ըստ Խորենացւոյ: *6.* Նոյնն ստոյգ ըստ Բուզանդայ: *7.* Ամիանոսի Մարկեղինոսի մանրամասն եւ ճշգրիտ պատմութիւնը Պապի մատնուելուն եւ սպանման վրայ: *8.* Պապ մեծ իշխան էր. Եզրակացութիւն:

**1.** *Անմիտ նախարարներ հասկցան իրենց գործած ոճրին մեծութիւնը՝ այլ շատ ուշ էր։ Քաջն Արշակ և իւր անպարտելի զօրավարն ոչ եւս էին. Մեծն Ներսէս մեկուսացած կողբար իւր Հայրենեաց աւերման վրայ։*

*Եւ սակայն ամեն յոյս կորած չէր. Արշակունի առիւծուն կորիւնը հեռուէն կը մռնչէր իւր մօրը տառապանքը լսելով և օգնութեան դիմելու համար կը տոչորէր։*

Մուշեղ՝ Վասակայ որդին ժողվելով նախարարներէն անոնք որոց սրտին մէջ տակաւին ազատութեան սիրոյ կայծ մը կար՝ գնաց անոնց հետ առ Վաղէս՝ երկրին թշուառ կացութիւնը նկարագրելու և խնդրելու որ օգնէ իրենց։ Նախարարները կը խնդրէին կայսրէն որ զՊապ թագաւորեցնէ Հայաստանի վրայ և Հռովմէական բանակով մ'օգնէ նմա Պարսիկները վանելու իւր Հայրենիքէն։

Վաղէս վարանեցաւ ընդունելու Հայոց աղաչանքը՝ պատճառելով որ այսպիսի օգնութիւն մը Պարսից հետ իրենց ունեցած դաշանց հակառակ կրնար համարուիլ և նորէն պատերազմ գրգռել իւր և Շապհոյ մէջ։

Վերջապէս նախարարաց աղերսին զիջանելով՝ հրաման տուաւ Տերենդ և Արդէ զօրավարաց՝ որ առնուն պատանի Պապը և տաններկու գունդ լէգէոնաց զօրօք ,Հայոց երկիրն երթան. սա պայմանաւ՝ որ Պապ արքայական անունը և նշանները չկրէ, այլ առ ժամանակ մը վարէ երկրին գործերը՝ մինչև որ պարագայները ներեն իւր իշխանութեան ամբողջապէս հաստատման։

Եկաւ Պապ իւր Հայրենիքը և մեծ եռանդով սկսաւ անոր աղէտները դարմանելու։ Ի լուր Արշակունի արքային անուան որ այնքան սիրելի էր Հայոց՝ ամեն փախստականներ, հալածեալներ ու ցրուածները եկան խմբելու իրենց բնիկ տիրոջ շուրջ։

Պապ գնաց գտաւ զՄեծն Ներսէս և շատ թախանձանօք ստիպեց որ գայ ազգին հոգևոր առաջնորդութիւնն ստանձնէ և օրհնէ իրենց բազուկն ու սուրը՝ որպէս զի կարող ըլլան վանել հայրենեաց թշնամիները։ Մեծն Ներսէս շատ դժուարաւ հաւանեցաւ և ելաւ գնաց արքային հետ ի բանակ։

Սակայն Պարսիկները տակաւին գրաւած էին երկրին գրեթէ երեք չորրորդ մասը։ Մուշեղ զօրահանդէս ըրաւ և տեսաւ որ տասը հազար հոգի ունի։ Այս փոքրիկ բանակով և Հռովմայեցի սակաւաթիւ օգնական գնդով՝ Մուշեղ զարկաւ հալածեց Պարսից Կարէն և Զիկ զօրագլուխներն՝ և ցիր ու ցան ըրաւ անոնց բանակը։ Սակայն այս բաւական չէր երկիրը ազատելու այս աւերիչ հրոսակներէն։

Կերևի թէ Պապ շատ ճակատամարտներ մղեց Պարսից դէմ՝ մինչև որ ամբողջապէս տիրեց իւր հայրենի ժառանգութեան*։ Այս ճակատամարտներէն ամենէն նշանաւորներն եղան Ձիրաւայ և Գանձակայ կռիւները։ Ձիրաւայ մարտին մէջ քաջ արքայն Պապ ուզեց անձամբ մտնել ի ճակատ՝ իւր հօր և մօր վրէժն իւր ձեռօք առնելու։ Սակայն Յունաց զօրավարներն չթողին՝ ըսելով ըստ Բուզանդայ՝ որ եթէ իրեն վնաս մը պատահի՝ իրենք ի՞նչ երեսով տեսնեն իրենց կայսրը՝ որ

(*) Տես. Բուզ. դպր. Ե. գլ. Բ. Դ. Ե. եւ Ժ։

*զինենք զրկած էր զպատանի արքային պահպանելու։*

*Կռիւը երկար եղաւ, յամառ և արիւնռուշտ։ Մէկ կողմէն արդար վրիժուց ցասումը, միւս կողմէն աշխարհակալութեան անյագ տենչը և պարտութեան ամօթը կը բորբոքէին պատերազմողները։*

*Վերջապէս Պարսիկները ի պարտութիւն մատնուեցան՝ և սկսան հալածական փախչիլ Հայ և Հռովմէական գունդերուն առջևէն։ Յաղթողները մեծ կոտորած տուին թշնամեաց՝ և անբաւ աւարով ետ դարձան։ Այս պատերազմին մէջ Հայ Նախարարաց տղայք մեծ քաջութիւն ցուցին։*

*«Եւ խմբեցաւ պատերազմն ի դաշտին՝ որ կոչի Ձիրաւ, և մարտեան ճակատ առ ճակատ։ Եւ մանկունքն քաջ Նախարարացն Հայոց ինքնակամ նահատակեալք, մտին ի մէջ ճակատուցն՝ առաջնորդութեամբ սպարապետին իւրեանց Սմբատայ Ասպետի, որդւոյ Բագարատայ, որ յազգէն Բագրատունեաց**։*

*Ելին և ի զօրացն Պարսից համատիք նոցա, և խաղացին ի մէջ ճակատուցն. և ցիր ընդ ցիր լինէր։ Եւ ի դառնալ մանկանցն Պարսից, ընդ հուպ դարձեալ մերոյն զհետ նոցա, օրինակ իմն որպէս փոթորիկ յանտառէ տերևաթափ, այն-*

---

(*) Արդեն վերը՝ երես *101* ըսած եմ թէ՝ ի՞նչ է խորենացւոյ այս պատմական վրիպակին նպատակը՝ որ զՍմբատ կը դնէ փոխանակ Վասակայ կամ Մուշեղի։

պէս երագ յերիվարացն առեալ նիզակօք, զի ցուրտ յերկիր ընկենուին, ոչ կարելով նոցա յիւրեանց ճակատն մտանել*»։

Իսկ Գանձակայ ճակատամարտը ոչինչ նուազ արիւնալից եղաւ։ Այս մարտին յաղթութիւնը Հայոց քաջ նիզակաւորները նուիրեցին իրենց քաջ Արշակ արքային յիշատակին։ Քանզի ամեն անգամ որ նիզակով Պարսիկ մը կը շամփրէին և գետինը կը փռէին՝ բոլոր զօրք առ հասարակ կը գոչէին. «Առ Արշակ քաջ. մեր Արշակ թագաւորին զոհ եղիր:

Աւա՜ղ այս տիրասիրութիւնը՝ որուն վրայ Շապուհ իսկ կը զարմանար՝ անժամանակ էր։ Երբ Շապուհ ի Պարսկաստան կերթայ յաղթուած՝ կը կրկնէ շատ անգամ. Երանի՜ անոր որ Հայոց գնդին տէր է, այնպէս տիրասէր և միաբա՛ն զօրաց։ Պատմական հեգնութի՞ւն մ'է այս արդեօք Հայոցս համար։

«Իսկ թագաւորն Պարսից Շապուհ գայր հասանէր ամենայն զօրօքն իւրովք ի տեղի պատերազմին, և գտանէր զզօրսն Յունացն և զգունդն Հայոց, զի կազմեալ պատրաստեալ էին ի գործ պատերազմին։ Եւ լինին խառնուրդք ճակատուն. ի պարտութիւն մատնեցան զօրքն Պարսից։ Մանաւանդ գունդք նիզակաւորացն յարձակեալք մղեցնեալք, քաջութեամբ զախոյ-

(*) Խորենացի Գ. Լէ:

եանս ի վերուստ յերիվարացն յերկիր կործանէին յանդիման թագաւորին Պարսից Շապհոյ. և ընդ ընկենուլն խրախոյս բառնային աղաղակելով ամենայն զօրքն պատերազմիկք Հայոց համակ, զայս բանս ասելով՝ եթէ «առ Արշակ քաջ»։ Զի զամենայն ախոյեանսն զոր ի ճակատուն յայն սպանանէին, նմա նուիրէին իւրեանց առաջի թագաւորին Արշակայ. զի զամենայն զոր սպանանէին, ասէին. «Արշակայ թագաւորին մերոյ զոհ լիջի՛ր»։ Եւ յորժամ Հայոց ազատանոյն ախոյենացն նիզակաւորացն ռազմ արարեալ յարձակեալ, զզօրսն Պարսից նիզակաւորքն առեալ ընդենուլին, ասէին ի խրախուսելն. Առ Արշակ քաջ։ Իսկ յորժամ զենեալ գլխատէին զախոյեանսն՝ ասէին. «Արշակայ զոհ լիջիր»։

«Այլ Շապուհ թագաւորն յորժամ աշխարհն իշխանութեանն իւրոյ հասանէր, զարմացեալ ընդ քաջութիւն գնդին կռուոյն որ դիպեցաւ նմա, և ասէր՝ եթէ զարմացեալ եմ ես զոր ինչ տեսի. զի իմ ի մանկութենէ իմմէ համակ ի ճակատու և ի կռիւ մտեալ եմ, և բազում ամք են՝ զի հասի ի թագաւորութիւն, և առանց կռուոյ ամ չեմ լեալ. բայց իմ ջերմ կռիւ զայս էր տեսեալ, որ այս անգամս դիպեցաւ ինձ։ Եւ միւս ևս՝ որ ընդ այս եմ զարմացեալ ես, ընդ մտերմութիւն միամտութեանն Հայաստան գնդին ընդ տիրասիրութեանն։ Զի այնչափ ամք են՝ զի տէրն նոցա Արշակ կորուսեալ է ի նոցանէն, և նոքա առ գութ

տիրասիրութեանն՝ զոր առ բնակ տէրն իւրեանց ունէին, զամենայն ախոյեանսն՝ զոր սպանանէին՝ նմա նուիրէին։ Այլ, ասէր, երանի՛ որ Հայոց գնդին տէր իցէ, այնպիսի տիրասէր և միաբան միամիտ զօրացն*»։

2. Սակայն բոլոր նախարարներ միաբան չէին իրենց նոր արքային հետ ալ՝ ինչպէս լքին անոր հայրն իսկ։

«Եւ Մեծին Ներսիսի առեալ զամենայն նախարարսն. որք կամակից էին ընդ տէրութիւնն Պապայ եւ որք ոչ, և զապրեալ Կամսարականն Սպանդարատ, սոցա միաբանութեամբ ածէ զՊապ յաշխարհս Հայոց**»։

Այսպէս մանուկ արքայն թագաւորած օրէն կը շրջապատուի դժգոհներէ և դաւաճաններէ։

Դղակ մարդպետը՝ որ Մուշեղ սպարապետին և Տերենդ զօրավարին ձեռօք սահմանապահ կը կարգուի ի Գանձակ՝ բանակցութեան կը մտնէ Պարսից թագաւորին հետ և կը խոստանայ անոր մատնել զՊապ, զՏերենդ յոյն զօրավարը և զՄուշեղ սպարապետը։ Բայց Պապի հաւատարիմ նախարարներ՝ մասնաւորապէս իւր սիրելի Գնել՝

(*) Բուզ. դպր. Ե. գլ. Ե:

(**) Խոր. գլ. ԼԶ: Իսկ Մեծին Ներսիսի զՊապ ի Հայոց աշխարհն բերելը հաւանական չէ, զի ինչպէս տեսանք ըստ Բուզանդայ՝ մեծ հայրապետն Պապի հրաւիրանօք եւ ստիպմամբ եկաւ վերստին իւր աթոռը:

Անձևացեաց տէրը հասկընալով դաւը՝ գաղտնի կիմացնեն արքային։

Պապ կանչեց զայն առ ինքն՝ պատճառելով թէ զնա պատգամաւոր պիտի ղրկէ առ Շապուհ՝ անոր հետ նիզակակցութիւն հաստատելու համար։ Մատնիչ Դղակ ուրախութեամբ փութաց եկաւ՝ յուսալով որ իր խորհուրդը դիւրաւ պիտի կարենայ ի գլուխ հանել այս կերպով։ Հրաման ըրաւ արքայն փողոտել զնա և անոր գլուխը նիզակի ծայրն անցնել տալով կանգնել տուաւ արքունի հրապարակը յօրինակ այլոց։

Մուշեղի վրայ ալ ծանր ամբաստանութիւններ կային անհաւատարմութեան։ Այս զօրավար՝ ըստ Բուզանդայ՝ անգամ մը պատերազմի մէջ գերի բռնած էր Շապհոյ կանայք և պատուով արձակած էր. ուրիշ անգամ ալ Աղուանից Ուռնայր արքայն պատերազմի ատեն չսպաննելով՝ ազատ թողած էր։ Երբ այս բանիս համար Պապ կը յանդիմանէր զնա օր մը՝ Մուշեղ պատասխանեց թէ՝ «ես թագաւոր մարդու վրայ ձեռք չեմ վերցըներ»։ Զայս լսելով Պապ Մուշեղի պարանոցին վրայ կիյնայ լալով և կըսէ. «Մահապարտ են անոնք՝ որ քաջ և պատուական Մուշեղի վրայ չարախօսութիւն կ'ընեն»։

«Ապա ամբաստան լինէին քսութեամբ առ մեծ թագաւորին Պապայ զզօրավարէն Մուշեղի, և ասէին՝ թէ գիտեա՛ արքայ, զի մեծաւ նենգութեամբ է ընդ քեզ, և քեզ մահու սպասէ.

զի զքո թշնամիսն համակ արձակէ. զի զբազումս բազում անգամ ի բուռն արկեալ՝ սովոր է արձակել զթշնամիսն. զի զՄուռնայր արքայ արձակեալ, թոյլ ետ ապրել, ի բուռն արկեալ զհակառակորդս քո։ Եւ վասն այսր իրաց բազում անգամ լինէր գժտութիւն թագաւորին Պապայ ընդ զօրավարին Մուշեղի. և բազում անգամ յանդիմանէր զնա վասն այսր իրաց։ Իսկ զօրավարն Մուշեղ տայր պատասխանի թագաւորին Պապայ, և ասէր՝ եթէ զիմ զընկերսն զամենեսեան ես կոտորեցի. իսկ որ թագս ունէին, նոքա իմ ընկերք չէին, այլ քո. եկեսցես՝ որպէս ես զիմսն սպանի, դու զքոյսն. այլ իմ յայր թագաւոր ոչ ձգեալ ձեռն երբէք որ թագ ունի, և ոչ ձգեմ, և մի այլ ձգել լիցի։ Եթէ կամիս սպանանել զիս, սպան, այլ ես, եթէ գայ ինձ ի ձեռն երբէք այր թագաւոր՝ որպէս եկն բազում անգամ, ես ոչ սպանանեմ զայր թագաւոր՝ որ գամ մի թագ ունի, եթէ ոք իսկ զիս սպանցէ։

Թագաւորն Պապ իբրև լսէր զբանս զայս, յարտասուս հարեալ, և յարուցեալ ի գահոյիցն, բուռն հարկանէր զՄուշեղէ. արկանէր զնովաւ զիրկս, և լայր ի վերայ պարանոցին Մուշեղի, և ասէ. Մահապարտ են այնոքիկ՝ որ իշխեն խօսել չարութիւն զՄուշեղէ, զառնէ քաջէ և զպատուականէ*»։

---

(*) Բուզ. դպր. Ե. գլ. Դ։

Սակայն առաքինութեան հաւատն ինչպէս որ զօրաւոր էր Պապայ սրտին մէջ՝ կերևի թէ նոյնպէս չէր և Մուշեղի քով, զի արքային մատնութեան և սպանման պարագայներէն կը տեսնուի որ Մուշեղ կամակից և խորհրդակից էր այս դժողային գործը կատարողներուն։

Ո՞վ էին այս դժգոհներ՝ և ի՞նչ կուզէին։ Ասոնք երկու կարգ էին. մաս մը կը ներկայացնէին անոնք որ Հայրենեաց աղէտէն իրենց փառք և պատիւ հանել կը ջանային. դաս մ'ալ այն չարագործներն էին՝ որ Արշակայ անկման և երկրին կործանման գործակցած ըլլալով՝ ուղղակի կամ անուղղակի՝ կը սոսկային Պապի անաչառութենէն և վերահաս արժանաւոր պատուհասէն։ Այս վերջին կարծիքը կը հաստատէ և Ամիանոս՝ ինչպէս յետոյ պիտի տեսնուի։ Ի զո՞ւր կը թղթատենք պատմութիւնը՝ ամենաթեթև պատճառ մը գտնելու՝ որ զպատանի արքայն արժանի ըրած ըլլայ իւր ոսոխաց կատաղութեան. ամեն թերթի մէջ, ամեն տողի մէջ Պապայ մեծութեան դրոշմը կը տեսնենք միայն։

Խորենացին՝ Պապի մեծ հակառակորդը՝ այսպէս կը խօսի անոր բարուց և գործոց վրայ։

«Յայնժամ (Թագաւորելուն պէս) արքայն Պապ դարձոյց ի Կամսարականն Սպանդարատ զամենայն ինչ՝ զոր յափշտակեալ էր հօր իւրոյ Արշակայ, զգաւառն Շիրակայ և զԱշարունեաց, ոչ իբրեւ զանիրաւ զագահութիւն հօր իւրոյ Ար-

շակայ, այլ որպէս պարգեւ ընդ վաստակոց՝ քաջին Սպանդարատայ, որ սպան զՆեկայ արքայ։ Այլ եւ զայլոց նախարարացն դարձոյց զզրկանս, և յոյժ անընչասիրաբար ցուցանէր զիւր ախորժակն եւ առատաբար կայր(*)»:

Այսպէս Խորենացին մեզ կը ներկայացնէ զՊապ՝ վեհանձն, առատաձեռն, անշահասէր իշխան մը. այս տիտղոսները մեծ արքայից միայն յատուկ են։

Տեսնենք այժմ թէ որո՞նք են Պապի ոճիրները՝ մանաւանդ թէ անոր վրայ դիզուած զըրպարտութիւնները՝ որոց համար մեր ազգը այսչափ երկար դարեր անիրաւած է այս նշանաւոր անձին յիշատակին։

Նախ Խորենացին կը գրէ.

«Բայց զի ամօթալի ախտիւ զազրագործ էր և յանդիմանեալ կշտամբէր ի Մեծէն Ներսիսէ, ընդ անկամբ հայէր ի նա, խորհելով չարիս. եւ ոչ իշխէր յինքնակալէն Թէոդոսէ յայտնի ինչ առնել նմա չարիս, դեղ մահու գաղտնի տըրուցեալ սրբոյն Ներսիսի՝ ելոյծ ի կենցաղոյս, որ կալաւ զաթոռ եպիսկոպոսութեանն ամս երեսուն և չորս։ Եւ փոխեալ յաշխարհէս երանելին Ներսէս ի գաւառին Եկեղեաց, ի գեօղն որ կոչի Խախ, բարձեալ զմարմին նորա արքային Պա-

(*) Խոր. գլ. ԼԸ:

պայ՝ թաղեաց ի Թիլն աւանին, զանխլաբար ունելով զեղեալսն*»:

Խորենացւոյ այս գրածին մէջ ժամանակագրական ահագին վրիպակ մը կայ, որ գուցէ դիտմամբ գործուած է՝ Մեծին Ներսէսի մահը Պապի ձեռօք կարծեցնելու համար։ Այս մեծ սխալն է՝ Թէոդոս կայսրը դնել փոխանակ Վաղեսի։ Պապի և նոյն իսկ Վարազդատայ ժամանակ՝ Հռովմայեցւոց արևելեան կայսրն էր Վաղէս։ Արդ, որովհետև այս կայսր արիոսեան էր՝ և սոսկալի թշնամի ուղղափառ եպիսկոպոսաց ու մեր Մեծին Ներսէսի՝ ինչպէս Խորենացի և Բուզանդ կը վկայեն, եթէ զՎաղէս յիշէ Ներսէսի սպանման գործին արդելք՝ ոչ ոք պիտի հաւատար. և որովհետև անպատճառ դիտում կայ գաղտնի սպանուած կարծեցնել զՄեծն Ներսէս՝ զԹէոդոս՝ ուղղափառաց մեծ պաշտպան կայսրը յիշատակած է Խորենացին՝ և այնպէս ցուցած թէ Պապ անկէ վախնալո՛վ միայն յայտնի չկրցաւ սպաննել այլ թունաւորեց զկաթողիկոսն։

Երկրորդ, Բուզանդ այսպէս կը խօսի անոր բարուց մասին.

«Պապ որդին Արշակայ ծնաւ ի մօրէն Փառանձեմայ Սիւնւոյ, որ էր լեալ կին Գնելոյն, զոր եսպան արքայն Արշակ, և առ զկին նորա Փառանձեմ իւր կին, և ծնաւ ի նմանէ որդի՝ որ

(*) Խոր. Գ. ԼԸ:

կոչեցաւն Պապ։ Եւ եղև իբրև ծնաւ զնա մայր իւր. քանզի անօրէն մարդ էր և ամենևին յԱստուծոյ ոչ երկնչէր, նուիրեաց զնա դիւաց. և բնակեցին դևք բազումք ի մանուկն, և վարէին զնա ըստ կամաց իւրեանց։ Սնաւ և աճեաց, և գործէր զմեղս. զպոռնկութիւն, զպղծութիւն արուագիտութեան և զանասնագիտութիւն, և զագրալի գարշութիւն. բայց կարի զարուագիտութիւն։ Դարձեալ ինքն իգանայր այլոց, և այսպէս մրմկեալ թաւալեալ էր։

Եւ երբեմն իբրև զգաց մայր նորա զարուագիտութիւնն, և ոչ կարացեալ համբերել պարսաւանացն վատանուանութեանն, ասէ ցսեննեկապան որդւոյն իւրոյ, թէ յորժամ նա խնդրեսցէ ի պղծութիւն զարսն՝ ընդ որ սովորն է անկանել, դուք զիս ի ներքս կոչեսջիք։ Յորժամ պատանեակն Պապ ինքն ընդ անկողին մտեալ՝ խնդրէր զարսն ի պղծութիւն, եմուտ մայր նորա և նրստաւ զառաջեաւ նորա՝ իւր որդւոյն։ Ապա սկըսաւ ճչել վայել պատանեակն, և ասէ ցմայր իւր. Յարիցես գնասցես ի բաց, զի մեռանիմ խորովիմ կսկծիմ պայթիմ, թէ ոչ յարիցես գնասցես ի տանէս։ Իսկ մայրն ասէ, թէ ոչ գնացեալ ելից ի տանէ աստի։ Իսկ նա հաղ քան զհաղ ճչէր, բազմացուցանէր զվայելն։ Իսկ մայրն նայեցեալ տեսանէր աչօք իւրովք օձք սպիտակք, զի պատեալք էին զգահոյիցն ստամբք, եւ ճապատէին ի վերայ պատանեկին Պապայ մինչդեռ ընգող-

մանեաղ էր նա. Կայր ի մահիճսն, վայէր և խնդրէր զպատանեակսն ընդ որ սովորն էր դիտանալ։ Իսկ մայրն գիտացեալ յիշեաց զայն, որոց ի ծննդեանն նուիրեաց զորդին իւր. գիտաց թէ նոքա են, որ ի կերպարանս օձիցն ճապատէին զորդւովն իւրով. յարտասուս հարեալ, ասաց. վա՜յ ինձ, որդեակ իմ. զի քեզ տագնապ էր, և ես ոչ գիտէի։ Ցարուցեալ գնաց եթող զտեղին. կատարել զպէտս ցանկութեանն։ Եւ այսպէս դիւօք վարեալ, յայսպիսի գործս զամենայն աւուրս կենաց իւրոց ըմբռնեալ Պապն որդին Արշակայ, մինչ եհաս ի թագաւորութիւնն, մինչև ի մահ իւր*»։

«Այլ թագաւորն Պապ, զի մինչ դեռ տղայիկ այն ինչ ծնեալ էր ի մօրէ իւրմէ՝ յայնժամ ձօնեաց զնա դիւաց անօրէն մայրն Փառանձեմ, և վասն այնորիկ լի էր դիւօք ի տղայութենէ իւրմէ։ Վասն զի հանապազ զկամս դիւաց առնէր, վասն այսորիկ և զբժշկութիւն իսկ ոչ կամէր գտանել. զի հանապազ կ՚արժէր զանձն իւր դիւօք, եւ կախարդանօք երեւէին դեւքն ի նմա. եւ ամենայն մարդ զդեւսն ի նմա աչօք բացօք տեսանէին։ Զի յորժամ մարդիկ հանապազօր յայգորել ելեալ մտանէին, տեսանէին զի յօձից կերպարանս ելանէին ի ծոցոյն Պապայ թագաւորին, եւ պատէին զուսօք նորա. և ամենեքեան

---

(*) Բուզ. դպր. Դ. գլ. ԽԴ։

որք տեսանէին զնա, երկնչէին ի նմանէ և հուպ երթալ։ Իսկ նա պատասխանի տայր մարդկանն ասելով՝ թէ մի՛ երկնչիք, զի սոքա իմ են. և ամենայն մարդ յամենայն ժամ տեսանէին զայսպիսի ինչ կերպարանս ի նմա։

«Զի բազում համբարք դիւաց համբարեալ էին ի նմա. և յամենայն ժամ ամենայն մարդոյ երևէր այս՝ որք գամ մի զթագաւորն տեսանէին. բայց յորժամ հայրապետն Ներսէս մտանէր առաջի նորա կամ սուրբ եպիսկոպոսն Խադ, դևքն չերևեալ աներևոյթ լինէին։ Եւ էր թագաւորն Պապ ի պղծութեան թաւալեալ. երբեմն այլոց էգ եղեալ, տայր զինքն ի խառնակութիւն. և երբեմն զայլս էգ արարեալ, զարուսն խառնակեալ պղծէր. և երբեմն ընդ անասունս խառնակէր։ Եւ այսպէս դիւօք վարեալ, որք ի նմայն էին բնակեալ զամենայն աւուրս կենաց իւրոց*)»։

Ահա Պապի մոլութեան ամբաստանագիրը. մայրն՝ անօրէն Փառանձեմ զինք դիւաց նուիրեր է, Պապ կախարդութիւն կընէ եղեր, անոր համար պղծութեան մէջ թաւալած է եղեր եւն եւն։

Թէ կախարդութեան յիմարական բարուբանքը ո՞ւստի ծագում առած է՝ այս պիտի տեսնուի քիչ վերջ՝ Պապի եղերական վախճանին պատմութենէն. իսկ մոլութեան մասին՝ ոչ մէկ օրինաւոր համոզիչ հաւանականութեան ամենա-

(*) Բուզ. դպր. Ե. գլ. ԻԲ։

թեթեւ նշան կրող փաստ կը տեսնուի ընդդէմ արքային։ Ամօթալի, յիմարական, կարկատուն առասպելներ, Թշնամանք միայն կը կարդանք անոր նկատմամբ, և ոչ այլ ինչ։ Կը զարմանանք թէ Բուզանդայ նման մեծ պատմագրի մը գրիչն ի՞նչպէս յառաջ գացեր է այս զազիր առասպելաց նկարագրութեան մէջ։ Ասոր մենք ալ կը կասկածիմք ոմանց բանասիրաց հետ թէ՝ Հայոց թշնամի Ասորիները խարդախած են այս պատմագրին ձեռագիրը։

Կը կրկնենք, կա՞յ լուրջ, պարկեշտ մէկը՝ որ հաւատայ թէ Պապ՝ դեռ հնգետասնամեայ կամ վեշտասնամեայ պատանի մը այն տարիքին հրէշ մ'ըլլայ մոլութեան՝ որ արուագիտութիւն, անասնագիտութիւն իգութիւն ընէ՝ յայտնի համարձակ իւր սենեկապետին, մօրը, հօրը, վերջապէս բոլոր արքունեաց և նոյն իսկ ժողովրդեան գիտութեամբն՝ և ապա նախարարաց ու ժողովրդեան կամօք թագաւորէ՝ դարձեալ նոյն զազրութեանց մէջ։ Ասիկա անարգել է՝ ոչ միայն Պապ՝ այլ և ամբողջ Հայ ազգին բարոյականը։

Մենք պատմութեանց մէջ կարդացեր ենք մոլի Թագաւորաց կեանքը որ ստուգիւ սոսկում կազդէ, օրինակի համար Լուտովիկոս ԺԵ. Գաղղիոյ արքային, որուն համար իրաւամբ ըսուած է թէ՝ «մարդկային անուան անարժան հրէշ մ'էր»։ Զի այս մարդը սպառեց տէրութեան գանձը, պսակեց զպոռնկութիւն և զշնութիւն յանձին

տիկին Բոմբասուրի և տիկին Տիւ Պարրիի, մոլութեանց տղմուտ հեղեղը բերաւ հասուց մինչև իւր ամուսնական և ընտանեկան յարկին տակ. տեսան զայս իւր անմեղ աղջկունք և լացին։

Իսկ Պապ ի՞նչ մոլութիւն ըրաւ. ՈՉԻՆՉ։

3. Պապի իշխանութեան՝ կամ որ նոյնն է ըսել բարեկարգութեան և Հայրենեաց թշնամիներ՝ չունենալով ուրիշ կարևոր իրողութիւն ապացուցանելու ընդդէմ այն արքային՝ զոր վատաբար հալածեցին և նահատակել տուին՝ անհագին զրպարտութիւն մը կընեն անոր դէմ իրենց օձիքը պատմութեան ձեռքէն կորզելու համար. այսինքն թէ՝ Պապ թունաւորեց զՄեծն Ներսէս։ Եւ ի՞նչու թունաւորեց. վասն զի Մեծն Ներսէս կը յանդիմանէ եղեր զՊապ՝ իւր թագում չարեաց, պղծութեանց (որոց գոյութիւնը չկայ) համար։ Կաթողիկոսն՝ իբր թէ չթողուր նմա եկեղեցի մտնել. Պապ կը թշնամանայ անոր դէմ, կուզէ յայտնի սպաննել, բայց կը վախնայ Յունաց կայսրէն. ուստի չհամարձակիր ծանր խօսք անգամ ըսել։ Բացի ասկէ՝ իւր զօրքէն, հայ ժողովուրդէն ալ սաստիկ կը վախնայ, զի եթէ այնպէս բան մ'ընէ՝ կապանուի իւր զօրքէն. զի բոլոր աշխարհ Մեծն Ներսեսէն կախեալ էր. զի մեծ և փոքր, ազատ և շինական, անարգ և պատուական մարդիկ իբրև երկնաւոր հրեշտակ կը դաւանէին զնա։

Արդ Պապ տեսնելով որ յայտնի չկրնար սպաննել զՄեծն Ներսէս՝ այնպէս կը կեղծաւորէ թէ ուղղութեան եկած է, կը խնդրէ քահանայապետէն որ իրեն ապաշխարութիւն տայ։ Ուստի կը կանչէ զինք ի Խախ իւր արքունիքը՝ Եկեղեցեաց գաւառին մէջ։ Ընթրիք կուտայ անոր, զայն իւր արքայական գահոյից վրայ կը բազմեցընէ, ինքն մէջ տեղ կը կանգնի՝ իւր ձեռօք գինի կը մատուցանէ, գինիին մէջ թոյն խառնուած էր։ Մեծն Ներսէս՝ կիմանայ, կը խմէ՝ ուրպէսզի նահատակաց կարգը դասուի. կը ներէ իւր սպանչին, խրատներ կը խօսի. կելնէ կերթայ իւր տեղը։ Արքունի սրահէն անոր հետ կերթան մեծամեծներ, նախարարներ՝ որ ներկայ էին։ Երբ Մեծն Ներսէս իւր բնակարանը կը մտնէ՝ կը վերցընէ պարեգօտը եւ սրտին վրայ նկանակի չափ կապուտակ նշան մը կը ցուցընէ։ Մեծամեծներ դեղթափներ կուտան, Մեծն Ներսէս կը մերժէ՝ ըսելով՝ որ ես ալ այսպիսի մահուան կը փափագէի։ Երկար խրատներ կը խօսի ներկայից. ապա երկու ժամու չափ արիւն կսկսի վազել բերնէն գունդագունդ։ Յետոյ նորէն կեցնէ, աղօթք կընէ. ամեն հեռաւոր և մերձաւոր, աւագ, պատուական և մինչև իսկ չտեսած չճանչած մարդիկ կը յիշէ իւր աղօթքին մէջ, յետոյ ձեռք յերկինս վերցընելով կ'ըսէ. «Տէր Յիսուս, ընկալ զոգի իմ». և այս ըսելով կ'արձակէ հոգին։

Մուշեղ սպարապետ, հայր մարդապետը և

*բոլոր ազատագունդ* բանակը կառնեն սուրբ Ներսէսի մարմինը Խախ գիւղէն և կը տանին ի Թիլ աւանը՝ իւր գիւղը, օրհնութեամբ սաղմոսիւք, կանթեղիւք, մեծ պատուով և բազում յիշատակօք կը յուղարկեն սուրբը։ Բայց դեռ չծածկած մարմին՝ ինքն թագաւորն Պապ կերթայ կը պատէ մարմինը և կը թաղէ մարտիրոսական բնակութեան մէջ. և չիմացող ձեւանալով՝ այնպէս կը ցուցնէ թէ ինքն ամենևին տեղեկութիւն չունի եղածէն։*

*Ահա այս թունաւորման հռչակաւոր վէպը՝ գրեթէ բառ առ բառ։*

*Քննադատութիւն. — Եթէ մէկն ուզէ ուրիշ մը գաղտնի թունաւորել՝ խնջոյքի՞ կը հրաւիրէ զնա բազմութեամբ և ինքն իւր ձեռօ՞ք կուտայ մահացու բաժակը։ Կը հարցունեմք. այս ընո՞ղն է յիմարը՝ թէ հաւատացողը. դարձեալ, քանի որ Յունաց կայսրը կը մեծարէր յոյժ զՆերսէս, նախարարներ, զինուորներ, ամբողջ ազգը Ներսէսէ կախեալ էին՝ և կսպաննէին զՊապ՝ եթէ համարձակէր ոչ թէ զհայրապետն սպաննել՝ այլ ծանր խօսք մ'անգամ ըսել անոր՝ երբ Մեծն Ներսէս թունաւորեցաւ՝ ինչո՞ւ վրէժխնդիր չեղան։ Կը հարցունեմք. Պապ չգիտէր որ մեծամեծներ, նախարարներ՝ որ Մեծին Ներսէսի հետ*

(*) Արքայի բուն զունդին՝ ազատագունդ բանակ կ'ըսուէր որոշելու համար նախարարաց զօրքերէն։

գնացին իւր բնակարանը՝ տեսան անոր թունաւորումը, և ի՞նչպէս կը համարձակէր գաղտնի եղած համարել այս ոճիրն ու երթալ իւր ձեռօք պատել և թաղել տալ հայրապետին մարմինը։ Բաց աստի, ինչո՞ւ թունաւորէր արքայն զկաթողիկոսը՝ անոր յանդիմանութենէն զերծանելու համար՝ քանի որ իշխանութիւն ունէր զնա կաթողիկոսութենէ հրաժարեցընելու՝ ինչպէս ըրաւ իւր հայրը։

Դիցուք թէ Պապ Մեծին Ներսիսի յաճախակի նախատանաց, կապանաց, եկեղեցւոյ հաղորդութենէն արգիլման համար վշտացած ըլլայ անոր. բայց իւր վղջումն, ապաշխարութիւն խնդրելը, անոր հետ հաշտուելու համար փայլն ի ճաշ հրաւիրելն ի՞նչ պատճառաւ անկեղծ չհամարինք։

Արիւնարբու Թէոդոս կայսրը թեթև խռովութիւն մը զսպելու համար՝ եօթն հազար հոգի կոտորել կուտայ Թեսաղոնիկէի ժողովրդէն՝ առանց քննելու յանցաւորը և անմեղը. ուստի երբ կուզէ Միլանի եկեղեցին մտնել աղօթելու՝ կարգիլուի սուրբ Ամբրոսիոսէն։ Անոր վրայ՝ Թէոդոս ընդունելով Ամբրոսիոսի դրած ապաշխարութիւնը՝ ութ ամիս չմտնէր եկեղեցի։

Արդ, Թէոդոսի այս ընթացքը ուղղութիւն, անկեղծութիւն կը համարուի. զի Թէոդոս սոսկալի մոլեռանդ մ՚էր. զի հալածեց խղճի ազատութիւնը, մահուամբ պատժեց բազմաստուած-

ները. Հերետիկոսներուն արգիլեց տէրութեան ամեն բարք պատիւ և պաշտօն, և նոյն իսկ իրենց կնիքը կտակելու իրաւունքը։ Այսպիսի ահաւոր բռնաւոր մը երբ մեծ կը յորջորջուի, տօնելի սրբոց կարգը կը դասուի, խեղճ պատանի Պապին զղջումն ի՞նչու անկեղծ չհամարուի. ի՞նչու կեղծաւոր համարուի այն՝ որ զինքը եկեղեցւոյ հաղորդութենէն (իբր թէ*) զրկողը կը բազմեցընէր իւր արքայական գահոյից վրայ՝ և ինքն ի մէջ անցած կսպասաւորէր, գինի կուտար։ Պապ՝ ինչպէս ըսինք՝ դեռ պաշտօնապէս հաստատուած չէր իւր գահուն վրայ, դեռ Շապուհ՝ և նոյն իսկ զինքն թագաւորեցընող Վաղէս չէին ճանաչէր զնա իբր թագաւոր, տակաւին իւր պահպանութեան համար եկող Հռովմէական բանակն ի Հայաստան էր, նախարարներէն ոմանք Շապուհի կրթնած՝ այլք իրենց բերդերը քաշուած՝ կամ իրենց տէրը դաւաճանելու հետամուտ էին. արդ այսպիսի դժուարին և վտանգալից վիճակի մէջ կարելի՞ բան էր որ Պապ ժողովուրդն ալ իրեն հետ թշնամացընէր՝ և իւր՝ ու իր գերդաստանին ոսոխներուն փոխմակը կատակաբար իւր դէմ յարուցանէր՝ զինքը տապալելու խիստ իրաւացի փաստ մը տալով անոնց՝

(*) Իբր թէ կ'ըսեմ՝ վասնզի համոզուած եմ որ Մեծն Ներսէս երբէք բանադրած չէ Պապին, զի կարեւոր պատճառ մ'ունեցած չէ։

*թունաւորմամբ այն մեծ մարդուն՝ որ նոյն իսկ իւր հակառակորդ Վաղէսին պատկառելի էր։*

*Այսպիսի բան մը ընելու համար կատարեալ ապուշ և կապելու յիմար մը պէտք էր ըլլար Պապ, և մենք պիտի տեսնենք քիչ վերջ՝ որ նա ընդհակառակն գերազանց հանճար մ'էր։*

*Սակայն եթէ հաւանական և ստոյգ իսկ կրնամք ընդունիլ՝ որ Մեծն Ներսէս արքայական խնջոյից օրը մեռած ըլլայ։ Հայրապետը ծեր էր և սրտի հիւանդութիւն ունէր*. այս հիւանդութեան գրեթէ անվրէպ ախտանիշներն են՝ սրտին վրայ երևցած նկանակի չափ կապուտակութիւնն, եւ բերնէն գունդագունդ հոսած արիւնը։ Այս մահաբեր ախտին եղերական լուծումը տեղի կունենայ սովորաբար՝ սաստիկ յոգնութենէ, մեծ յուզմունքէ կամ արեան շրջանը սաստկապէս երագող ուրիշ պատճառէ՝ որոյ կարգը կրնամք դասել նաև հանապազօրեայ ապրելու եղանակին (régime) փոփոխումը։*

*Արդ հաւանական է որ Մեծն Ներսէս այս*

---

(*) Մենք քանի մը տարիէ ի վեր մտադիր ըլլալով գրել մեր այս երկու անուանի թագաւորաց՝ Արշակ Բ. ի եւ Պապի կեանքը՝ այս թունաւորման մասին հարցուցինք ազգային մեծ բժիշկ Խ. Մ. Էֆէնտիի եւ այլոց կարծիքը՝ պատմելով Մեծին Ներսիսի մահուան պարագաները եւ ախտանիշները. գրեթէ ամենքը միահամուռ հաստատեցին որ *անոր մահը սրտի հիւանդութեան հետեւանք է եւ ոչ թունաւորման:*

պատճառաւ միոյն ազդեցութեամբ վախճանած ըլլայ խրախճանութեան օրը կամ միւս օրը։

Մեծին Ներսէսի մահն՝ սրտի հիւանդութեան՝ եւ ոչ այլ պատճառի արդիւնք ըլլալը անտի յայտ է՝ որ երկու ժամ գունդագունդ արեան հոսումէն վերջ՝ կարող եղած է դարձեալ ելնել երկար բարակ աղօթել մինչև իւր վախճանի շունչը։ Այս կը ցուցընէ թէ ախտին հարուածը չէր թունի՝ որ անգամ մը երբ ներգործէ՝ այլ ևս աչք բանալ չտար, այլ հետզհետէ կը նուաղեցընէ՝ մինչեւ քայքայէ բովանդակ կեանքը։ Մինչդեռ սրտի հիւանդութիւնը այսպէս չէ. այլ օրեր՝ և մինչև իսկ շաբաթներ կը տևէ շատ անգամ իւր վերջին հարուածը։

Այսչափ կը բաւէ կարծեմք հերքելու այս նողկալի զրպարտութիւնը։

«Այլ սուրբն Ներսէս եպիսկոպոսապետն Հայոց հանապազօր ընդդիմացեալ թագաւորին Պապայ, կշտամբէր և յանդիմանէր մեծաւ վկայութեամբ յանդիմանութեամբ, և վասն չարեաց նորա բազմաց* ոչ համարձակէր նմա զսեամս եկեղեցւոյն կոխել, և ոչ մտանել նմա ի ներքս։ Հանապազ կշտամբեալ յանդիմանէր և խրատէր, զի գտցէ զանձն իւր ի կորստենէ գործոց իւրոց. և հանապազ խօսէր ընդ նմա, զի փոյթ արասցէ

(*) Այս *բազում չարիքը*՝ բարեկարգութիւնները՝ Մեծին Ներսէսի մահէն վերջ կատարեց Պապ։

ապաշխարութեան։ Դնէր առաջի նորա վկայութիւնս ի գրոց, ահ արկանելով յաւիտենական դատաստանացն պատժովք՝ գալ ի զգաստութիւն և ի լուանալ, և յառաջդիմութեան արդարութեան կարգացն և գործոցն սրբութեան փոյթ առնել։

Իսկ Թագաւորն Պապ լսելոյ նմա ոչ լսէր. այլ և ընդդիմացեալ ևս մեծաւ թշնամանօք և մահու սպառնէր նմա, և կամէր սպանանել զնա յայտնի. բայց ի Թագաւորէն Յունաց յայտնի և անարգել անգամ բանիւք չիշխէր, և ոչ սակաւ մի համարձակել ի նա, թող թէ մահու աղագաւ։ Նաև իւր իսկ աշխարհի մարդիկն և զօրքն ամենայն չառնուին յանձն զայսպիսի ինչ առնել. այլ՝ զորմէ ամենայն մարդիկ աշխարհին Հայոց կախեալ կային զնմանէ վասն արդար գործոցն, սրբութեան գնացիցն յաշխարհի, խաղաղութեամբ մեծի առաջնորդութեանն, նա և վասն յայտնի նշանագործութեանն սքանչելեացն՝ զոր առնէր, իբրև յերկնաւոր հրեշտակ այնպէս նայէին ամենայն մարդ։ Եւ Թագաւորն ոխացեալ էր ընդ նմա, և խնդրէր սպանանել զնա. այլ յայտնի զայս և բանիւք ճառել ոչ իշխէր, թէ ոչ՝ իւր զօրէն սպանանէին զնա։ Զի այնպէս ամենայն մարդ ապաստանեալ էին յաղօթս նորա, և սիրէին զնա առ հասարակ մեծամեծք և փոքունք, պատուականք և անարգք, ազատք և շինականք միանգամայն»։

«Այլ Թագաւորն Պապ յամենայն ժամ էր թշնամի մեծի քահանայապետին վասն յանդիմանութեան մեղաց իւրոց չարեաց՝ զոր գործէրն, և յանդիմանեալ լինէր յառնէն Աստուծոյ ի Ներսիսէ հանապազ։ Ոչ զգաստանալ կամէր և ոչ գալ յուղղութիւն և ոչ համբերել կարէր հանապազորդ նախատանացն յանդիմանչին. էարկ ի միտս սպանանել զմեծ քահանայապետն Աստուծոյ զՆերսէս։ Իբրև յայտնի զայս ոչ մարթ էր նմա առնել, կեղծաւորել կերպարանէր իբրև այն եթէ յուղղութիւն եկեալ է. աղաչէր զքահանայապետն Աստուծոյ տալ՝ նմա ապաշխարութիւն։ Եւ կոչեցաւ յապարանս իւր ի Խախ աւանի յԵկեղեաց գաւառի. արար նմա ընթրիս, աղաչեաց զայրն Աստուծոյ բազմել նմա յարքունական գահոյսն, և իբրև այնու թէ սըրբեսցի նա ի չարեաց անտի իւրոց, և ինքն այնուհետև յայնմ հետէ յապաշխարութիւն մտցէ։

«Իսկ իբրև զառաջինն բազմեցոյց, ինքնին Թագաւորն յոտն կացեալ հոլանեալ, ի մէջ գետին անցեալ, անապակ մատուցանէր առնն Աստուծոյ Ներսիսի յընթրիս անդ, և դեղ մահու ընդ կոտինդն խառնեալ մատուցանէր նմա։ Եւ յորժամ ըմպէր զբաժակն զայն՝ իմացեալ անդէն, խօսել սկսաւ և ասէ. Օրհնեալ է տէր Աստուած մեր, որ արժանի արար զիս ըմպել զբաժակս զայս, և հասանել մահու՝ որ վասն տեառըն է, որում և ցանկացեալ էի ի մանկութենէ

խմէ*։ Արդ զբաժակս փրկութեան ընկալայց, և զանուն տեառն կարդացից, զի և ես հաւասարեցից հասանել ի մասն ժառանգութեան սրբոցն ի լոյս։ Այլ քեզ՝ ո՛վ Թագաւոր, արժան էր իբրեւ զայր թագաւոր յայտնի հրամանն տալ եւ սպանանել, զի ո՞վ էր՝ որ արգելոյր զքեզ, կամ ո՞վ էր՝ որ պահէր զձեռն քո ի գործոց, զոր ինչ կամէիր գործել**: Բայց տէր. Թող սոցա զայս գործս՝ զոր ինչ գործեցին յիս***. և ընկալ զհոգի ծառայիս քո, որ հանգուցիչդ ես ամենայն աշխատելոց, և կատարիչ ամենայն բարութեանց։

«Զայս և այսպիսի, և որ ինչ նման են այսպիսի բանք, խօսեցաւ. և յարուցեալ գնաց ի վանս իւր։ Եւ զհետ գնացին նորա ի տաճարէն արքունի ամենայն մեծամեծքն նախարարքն Հայոց,

---

(*) Այս գրպարտութիւն հնարողները զՊապ մարդասպան ընելու նպատակաւ՝ զՄեծն Ներսէս *անձնասպան* կը ցուցընեն. զի կըսեն թէ իմացաւ՝ եւ խմեց բաժակը: Եւ որովհետեւ բռնութիւն չկայ Պապի կողմէ՝ այս կերպով ազատ մահը նահատակութիւն չէ՝ այլ անձնասպանութիւն.....:

(**) Ուրեմն սուտ է թէ Պապ կը վախնար՝ Յունաց կայսրէն, Հայ ազգէն, իւր զինուորներէն, ահա Մեծն Ներսէս իւր բերնովը կը խոստովանի թէ՝ Պապ եւ *ոչ յումեքէ արգելք եւ երկիւղ ունէր, եւ թէ կրնար յայտնի հրամանն տալ իբրեւ զայր թագաւոր՝ եւ սպանանել:*

(***) Այս լոքնակի խօսքէն այնպէս կիմացուի թէ՝ Պապ կամակիցներ ալ ունի եղեր:

և Մուշեղ սպարապետն Հայոց, և Հայր մարդպետ, և ամենայն որ միանգամ էին անդ, մտին ընդ նմա ի վանս նորա։ Եւ իբրև եմուտ ի վանս իւր, վերացուցեալ զպարեգօտս իւր՝ ի վերայ սրտին ցուցանէր կապուտակեալ քան զչափ նկանակի միոյ։ Իսկ մեծամեծք նախարարացն մատուցանէին նմա թիւրակէս և անդեղեայս վասն ապրելոյ. իսկ նա ոչ կամեցեալ զայն ի բաց մերժէր, այլ ասէ. «Մեծապէս եղև ինձ բարի, զի եհաս ինձ մեռանել վասն զգուշութեան պատուիրանացն Քրիստոսի։ Եւ քանզի դուք ձեզէն գիտէք, զի հրապարակախօսէի ընդ ձեզ՝ զոր ինչ խօսէի, արժան էր ինձ հրապարակաւ մեռանել ի ձէնջ, զի այնմ իսկ ցանկացեալ էի. բայց բարւոք ել ինձ վիճակն ընդ ընտիրս, և ժառանգութիւն իմ հաճոյ եղև ինձ։ Օրհնեցից զտէր, որ այս մասին վիճակի ժառանգութեան ապրեցոյց զիս. և մեծապէս խնդութիւն է ինձ, զի վաղվաղակի լուծայց ես յանօրէն և յամբարիշտ աշխարհէ աստի յայսմանէ»։ Եւ բազում ինչ խօսեցաւ ընդ նոսա, և զգուշացոյց զնոսա, և աղաչեաց զամենեսին զգուշանալ անձանց, և պահել զպատուիրանս տեառն։

«Եւ յետ այսորիկ սկսաւ զարիւնն գունդ գունդ ի ներքուստ ընդ բերանն արտաքս հոսել իբրև զերկուս ժամս։ Եւ յետ այսորիկ յարուցեալ եկաց յաղօթս. եդեալ ծունր, խնդրէր զթողութիւն ի վերայ սպանողին իւրոյ։ Ապա

յետ այսօրինակ յիշէր յաղօթս իւր զամենայն մարդս, զմերձաւորս և զհեռաւորս, զանարգս և զպատուականս եւ զայնոսիկ անգամ, զորս երբէք ոչ ճանաչէր զնոսա, յիշէր յաղօթս իւր։ Եւ յետ աղօթիցն կատարելոյ համբարձեալ զձեռս իւր և զաչս իւր ընդ երկինս, ասաց. «Տէր Յիսուս Քրիստոս, ընկալ զհոգի իմ»։ Եւ զայս ասացեալ, արձակեաց զհոգի։ Եւ առեալ զմարմին սրբոյն Ներսէսի զառնն Աստուծոյ պաշտօնեայք եկեղեցւոյն, և Փաւստոս եպիսկոպոս, և պաշտօնէիցն գլխաւոր՝ Տրդատ և Մուշեղ սպարապետն և Հայր մարդպետ, և ամենայն ազատագունդ բանակն արքունի, բարձին յաւանէն ի Խախ գեղջէ՝ ուր գործն կատարեցաւ, տարան ի Թիլն յաւանն յիւր գեւղն։ Հանդերձ սաղմոսիւք և օրհնութեամբ, կանթեղիւք վառելովք և մեծապաշտմամբք և բազում յիշատակօք զսուրբն յուղարկեցին։ Բայց մինչչև էր ծածկեալ զմարմին սրբոյն, ինքն Թագաւորն Պապ երթեալ պատեաց և թաղեաց ի մարտիրոսական ի բնակութիւնն. բայց Թագաւորն Պապ ի չքմեղս լինելով՝ չլուելոյն* առնէր, իբրեւ թէ իւր չիցէ գործեալ զայն**։

(*) Ո՞րչափ անմիտ մարդ է եղեր Պապ. ամբողջ աշխարհ իմացաւ իւր ոճրագործութիւնը, եւ դարձեալ ինքն չիմեղ կ'ըլլայ, չլուելոյ կը զարնէ, եւ կերթայ իւր ձեռքով կը պատէ, կը թաղէ սպանեալը: պէտք է խոստովանիլ՝ որ ասկէ աւելի անհամ զրպարտութիւն ստս անգամ չէ եղած:

(**) Բուզ. դպր. Ե. գլ. ԻԳ. ԻԴ:

*4. Սակայն պատանի արքային վրայ կուտակուած զրպարտութեանց գաղտնիքը կը մեկնուի ամբողջապէս՝ երբ ուշով հետևիմք անոր կատարած նշանաւոր բարեկարգութեանց՝ և իմանամք անոր աղիողորմ մահուան պատճառը։*

*Մեծին Ներսիսի մահէն վերջ Պապ անոր յաջորդ կարգեց զՅուսիկ եպիսկոպոս՝ Աղբիանոս անուն մեծ եպիսկոպոսին ցեղէն՝ և* հրա՛ման տուաւ ն՛մա իւր պաշտօնին գլուխն անցնիլ՝ առանց Կեսարիոյ եպիսկոպոսապետէն ձեռնադրուելու: *Այսպէս ազգային կաթողիկոսութեան անկախութիւնը՝ զոր Արշակ ստեղծեց՝ Պապ վերջնապէս նուիրագործեց։ Ի զուր Կեսարիոյ եպիսկոպոսապետը սաստիկ* զարմացաւ եւ զայրացաւ*. *Ընդ վայր Կեսարիոյ եպիսկոպոսները ժողով գումարելով բողոքեցին առ Պապ այս գործին դէմ՝ և իբր թէ լուծեցին Հայոց կաթողիկոսութեան իշխանութիւնը. Պապ անխռով մնաց։ Այսպէս յղացաւ և ի գլուխ հանեց Պապ այն նշանաւոր բարեկարգութիւնն՝ զոր դեռ մեր ժամանակներ հազիւ մտաբերեցին եւրոպական մեծ բարենորոգիչք՝ գլխաւորապէս Յովսէփ Բ. կայսրն Աւստրիոյ. այսինքն էր՝ վանքերու, կուսաստանաց և հասարակաց այլ* բարեպաշտակ *հաստատութեանց բարեկարգութիւնը։*

(*) Եւ իբրեւ այս մեծ զարմանալով ցասման եղեալ հայրապետին Կեսարու: Բուզ. դպր. Ե. գլ. ԻԹ:

Զարմանալի՜ հանճար. հազիւ քսաներեք քսանըչորս տարեկան Ասիացի պատանի իշխան մը կը յղանայ այսպիսի մեծ խորհուրդ մը՝ աստի տասնըհինգ դար յառաջ։

Արդ՝ Մեծն Ներսէս մարդասիրական անթիւ հաստատութիւններ շինած էր։ Ասոնց մէջ կային՝ որք ազգին և մարդկութեան պատիւ կը բերէին՝ որպիսիք են՝ հիւանդանոցներ, որբանոցներ, վարժարանի նպաստակար կառուցեալ մենաստաններ՝ ուր տղայք կուսանէին հելլէն եւ ասորի դըպրութիւնը: Կային նաև այնպիսի հաստատութիւնք ալ՝ որ հակառակ մեծ հիմնադրին բարի նպատակին՝ անբարոյականութեան, ծուլութեան և ամէն կերպ աղտեղութեանց որջ դարձեր էին. այս կարգէն պէտք է հաշուել այն անթիւ կուսաստաններ, այրենոցներ, աղքատանոցներ, օտարանոցներ, հիւրանոցներ՝ ուր անթիւ արք և կանայք՝ ազգայինք և օտարք՝ խառնիճաղանճ բազմութիւն լցուած՝ կուտէին, կը խմէին, կը վատնէին եկեղեցւոյ ունեցած անբաւ կալուածներուն հասոյթները՝ որք իշխանութեան մը գանձուն բաւական էին։ Պապ փակեց կուսաստաններ, ցրուեց կոյսեր և հրաման տուաւ որ ամուսնանան։ Պարպեց աղքատանոցներ, օտարանոցներ՝ ուր անթիւ ծոյլեր ժողոված էին՝ եւ որոց աւելի պիտոյքը իրենց ոտքը տանել հրամայած էր Մեծն Ներսէս, բացի արդէն անոնց ունեցած հասոյթէն։

Այս հաստատութեանց վրայ տեսուչներ դըրուած էին՝ որք ո՛վ գիտէ ինչ զեղծումներ կը գործէին. Պապ զանոնք վռնտեց, և ստիպեց աղքատները որ իրենց հացը ճարեն։

Նոյնպէս պտղի և տասանորդի կեղեքիչ սովորութիւնը ջնջեց։ Կարգ մը տուներ ալ կային՝ ուր կը բնակէին օտարներ, պանդուխտներ, նժդեհներ, անցաւորներ (ճամբորդ) հաստահարեալներ, տառապեալներ որոց համար վերակացուներ կարգուած էին ի Մեծէն Ներսիսէ, և հրամանչիւրին սեփական դարման (ուտեստ). արդ Պապ ասոնք բոլորն ալ ճամբեց։

Բաց աստի ամուսնալուծութեան օրէնքը՝ զոր մեզմէ անհամեմատ աւելի մեծ և քաղաքակիրթ քրիստոնեայ ազգեր ընդունած են այսօր, Պապ աստի տասնևհինգ դար յառաջ հաստատեց։

Եկեղեցին ընդարձակ հողեր ունէր այլ և այլ գաւառաց մէջ՝ որոց հասոյթը ինքը կը տընտեսէր ըստ հաճոյս. այս ոչ միայն մեծ զրկանք էր արքունի գանձուն՝* այլ նաև առիթ բազում զեղծմանց։ Այս հողեր պարունակող գաւառները

(*) Թէպէտ այն ժամանակներ Ասիոյ մէջ Պարսկաստան միայն բաւական կազմակերպեալ գանձային դրութիւն ունէր՝ սակայն վերջապէս մեր մէջ ալ արքայից գանձը կերպով մը ազգին էր. անով էր որ արքայք ի պահանջել հարկին վարձկան զինուորներ կը ժողովէին, դաշնակից արքայից ընծայներ կուտային ևն ևն։

տասնևհինգ հատ էին, Հայաստանի ամենէն արդասաւորները։

Արշակ Բ.ի օրով Հայր մարդպետն անգամ մը յայց երթալով Մեծին Ներսիսի կը տեսնէ եկեղեցւոյ կալուածոց սքանչելի դիրքը, երկրին բարեբերութիւնը. կը ցաւի որ Արշակունի թագաւորներ այնչափ մեծատարած անման երկիրներ թողեր են կանանցահանդերձ մարդոց (վանականաց). և կը յաւելու. Եթէ առ Արշակ հասնիմ՝ այս տեղերը պիտի քակեմ, ամեն բան պիտի փոխեմ և արքունի չէն և պալատ կառուցանեմ անոնց փոխարէն։ Մեծն Ներսէս կզչարի, կանիծէ զՀայր մարդպետը՝ որ ի դարձին կսպաննուի Շաւասպ Արծրունիէն՝ որ ոխ ունէր անոր դէմ։

«Ապա դէպ եղև անցանել Հայր մարդպետին առ տեղեօքն, ցանկացաւ ելանել ի սուրբ տեղիսն Աշտիշատու կալ յաղօթս, և առնուլ ողջոյն ի սրբոյ եպիսկոպոսապետէն Ներսէսէ։ Ապա իբրև կային յաղօթս, ետուն ողջոյն. հրաման տայր սուրբ հայրապետն Ներսէս, եկելոցն ճաշ պատրաստել։ Եւ մինչդեռ նոքա պատրաստէին ինչ ըստ նմա արժանի ուսադօրէն սպաս, նա ելանէր յեպիսկոպոսական կայենէն յապարանիցն մինչև ի վկայարանս սրբոցն, ի մեծ և ի գեղեցիկ հրապարակին զերթևեկս առնել շրջէր, զճեմս առնել։ Ապա տեսանէր զգեղեցկութիւն վայրացն, զնիստ շքեղութեան ի բարձրաւանդակ տեղեացն և զնայեացն ի խո-

նարհ, զի կարի վայելուչ էր տեղին, և չա-րակնեաց։

Ապա եմուտ բազմեցաւ յուտել և ըմպել։ Իսկ յորժամ արբեցաւ սխաղակեցաւ, սկսաւ ներ-քինին խօսել բանս հպարտս և ամբարտաւանս յարբեցութեան` դնէր թշնամանս Տրդատայ արքայի, ի մեռեալս և կենդանեացն ի կեանս, ազգի և տակի և տոհմի Արշակունեաց թագաւորացն Հա-յոց։ Զի՞րդ, ասէ, զայսպիսի տեղիս կանան-ցահանդերձ մարդկան տուեալ է, և ոչ արանց։ Եւ զսուրբ տեղեօքն քամահեալ արհամարհէր, և ասէր` եթէ զայս տեղիս ի բաց քակեմք, զի աստ պարտ է չինել զապարանս արքունի։ Եւ եթէ ես Հայր մարդպետ կենդանի լիցիմ և առ թագաւո-րաւն հասից, ասէ, որ ինչ աստ իցէ, զայն ի բաց փոխեցից. և որ աստ իցեն, ասէ, զնոսա հանից, և տեղիս արքունի սենեակ կազմեցից*»։

Հայր մարդպետը յայնժամ չկրցաւ իւր նպա-տակն իրագործել, զի` ինչպէս ըսինք` ճամբան սպաննուեցաւ։

Սակայն Պապ յարքունիս գրաւեց այս հողե-րուն եօթնին հինգ մասը, և միայն երկուքը թո-ղուց ի պէտս եկեղեցւոյ։ Հողերուն թուոյն հա-մեմատ իւրաքանչիւր գիւղի վրայ մէկ երէց և մէկ սարկաւագ ձգեց. Մնացեալները` նոյնպէս երիցունց ու սարկաւագաց որդիները` որ մինչև

(*) Բուզ. դպր. Դ. գլ. ԺԳ:

ցայնժամ ազատ էին զինուորութենէ՝ արքունի բանակին մէջ առաւ։

Ահա ցանկն Պօլի ամբողջ չարագործութեանց:

Եթէ Պօլ զօշաքաղ ոք ըլլար՝ պիտի ըսուէր թէ այս բարեկարգութիւնները ըրաւ իւր ագահութիւնը յագեցընելու համար. բայց ահա Խորենացին՝ անոր մեծ ոսոխը՝ զայն կանուանէ առաստաիրs եւ անշահասէր յանձնեանյնի:

Բուզանդ կըսէ թէ այս բարեկարգութիւնները ըրաւ Պօլ ի հեճուկս Ներսիսի։ Ծաղրելի չէ՞ այս ենթադրութիւնը. բան մ'ընել ի հեճուկս կենդանութեան մարդու մը հասկընալի է, բայց մահուանէ ետքը ի՞նչ նշանակութիւն ունի։ Դիցուք թէ հասարակ, ստորին նկարագրի տէր անձ մ'ընէ զայս, բայց Պօլի պէս մարդու մը, չենք կարող վերագրել այդ գաղափարը։ Բայց թագաւոր մը ի՞նչու սպասէ մահուանէ յետոյ վրէժ առնելու հակառակորդէ մը։

Թէ ինչո՞ւ Պօլ Մեծին Ներսիսի մահուանէ յետոյ ըրաւ իւր բարեկարգութիւնները՝ այս յայտնի կը ցուցընէ արքային ողւոյ մեծութիւնը և մեծ հայրապետին դիւրազգացութիւնն չվիրաւորելու մասին ունեցած գորովալից ուշադրութիւնը։

Պօլի վրայ բարդուած ստութեանց և զրպարտութեանց մէջ մեք ստարաց և մանաւանդ րապէս յոյն կղերին մասնակցութիւնն ալ կը

*տեսնեմք։ Կեսարիոյ եպիսկոպոսապետը և սիւնհոդոսը՝ որ այնչափ բորբոքեցան Հայ կաթողիկոսութեան վերջնապէս անկախ ըլլալուն ի ձեռն Պապի՝ անշուշտ ամեն կարելի բանն ըրին արքային անկումը փութացընելու համար։ Բուզանդ միամտաբար կարծես կը խոստովանի զայս։*

*«Նմա այնպէս թուեցաւ՝ եթէ զայն չար կամացն հեճուկս Ներսիսէ առնիցէ ի կենդանեաց առ մեռեալս, վասն թշնամութեանն՝ զոր ունէր ընդ նմա։ Եւ զայն ոչ ածէր զմտաւ՝ թէ զանձն կորուսանէ*»։*

*«Իսկ թագաւորն Հայոց Պապ զի թէպէտ և սպան զհայրապետն աշխարհին Հայոց զՆերսէս, սակայն ոչ յագեցաւ մահուամբ նորա, այլ ջանայր այսպէս՝ թէ զինչ միանգամ կարգք իցեն ուղղութեան ի Ներսիսէ եդեալ յեկեղեցւոջն, եղծեսցէ և խանգարեսցէ։ Եւ սկսաւ նախանձ վարել ընդդէմ յառաջագոյն կանոնելոցն ի նմանէ, և սկսաւ հրաման տալ յայտնապէս յաշխարհին աւերել զայրենոցսն և զորբանոցսն՝ զոր շինեալ էր Ներսէս ի գաւառս գաւառս, և աւերել զկուսաստանսն ի գաւառս գաւառս և յաւանս յաւանս պարսպեալս և ամրացեալս՝ որ նորին Ներսիսի էր շինեալ վասն ամրապահս ա-*

(*) Բուզ. դպր. Ե. գլ. ԼԱ։ Այս *կորուստը* թէպէտ պատմագիրը կրօնական տեսակէտով ըսած ըլլայ՝ մենք զայն կարի պատճառ կը համարիմք արքային դէմ լարուած դժոխային մեքենայութեան։

ռանգոցն զգուշութեան։ Քանզի յիւրում կենդանութեան երանելոյն Ներսիսի էր շինեալ. շինեաց զայս կուսաստանս յամենայն գաւառս, զի որ միանգամ կուսանք և հաւատացեալք իցեն՝ անդր ժողովեսցին ի պահս և յաղօթս, և կերակրեալ յաշխարհէ և յիւրաքանչիւր՝ ընտանեաց։ Զայն աւերել հրամայէր Պապ թագաւորն և զկուսանսն հաւատացեալս տայր հրաման ի խառնակութիւն պղծութեան։

Եւ յամենայն աւանս էր շինեալ նորին Ներսիսի և հիւանդանոցս, յամենայն կողմանց և ռոճիկս և դարմանս կարգեալս, և այս հաւատարիմս թողեալ տեսուչս հիւանդացն և աղքատացն. նոյնպէս և այնոցիկ յանձն արարեալ որք երկուղածք էին յԱստուծոյ, որք դատաստանացն յաւիտենականացն և գալստեանն Քրիստոսի սպասէին։ Զվերակացուսն հալածէր թագաւորն յիւրաքանչիւր տեսչութենէ, և զտեղիսն ի բաց աւերէր*։ Զոր վերակացուսն կարգեալ էր յաղագս չքաւորացն. և աղքատաց տեսուչս, զնոսա ի բաց հալածէր. և հրաման տայր ամենայն աշխարհի իշխանութեանն իւրոյ. աղքատքն բայց ելթէ ի

---

(*) Պէտք է իմանալ թէ որբանոցները, հիւանդանոցները չաւերեց, այլ անոնց տեսուչները որք երկիւղած էին յԱստուծոյ ճիշդ Թարթիւֆի պէս՝ որով զրպարտեցաւ թէ այս մարտիրոսական յարկերը իսպառ փակեց Պապ։

մոյր ելցեն. այլ անդր ոք ինչ մի՛ իշխեսցէ տանել, եթէ ոչ նոքա եկեսցեն ժտեսցեն աղաչեսցեն, ապա թէ գտանել հագիւ ինչ կարասցեն։ Եւ զկարգս պտղոյն և զտասանորդացն՝ որ ի նախնեացն կարգեալ սովորութիւն էր տալ յեկեղեցին, վասն այնորիկ հանէր հրաման ընդ աշխարհ՝ զի մի՛ ոք տացէ։

Եւ յաւուրսն Ներսիսի հայրապետի՝ ոչ ոք իշխէր ի նմանէ հանել կամ թողուլ զկին իւր զամուսին յամենայն երկիրն Հայոց, զոր միանգամ քօղով կամ պսակաւ հարսանեացն օրհնութեամբ առեալ էր. և ոչ այլ առնել միւսանգամ իշխէր ոք համարձակել։ Եթէ յանկարծ մեռանէր ոք, ոչ ոք իշխէր անյուսութեամբ արտաքոյ կարգի կանոնի եկեղեցւոյ լալ զմեռեալն. և ոչ կոծ ոք դնէր կամ աշխարանս մեռելոյն, և ոչ ձայնս ոք արկանէր ի վերայ մեռելոյն յաւուրսն Ներսիսի. այլ լոկ արտասուօք և ըստ արժանի սաղմոսիւք և օրհնութեամբ, կանթեղօք և մոմեղինօք լուցելովք զմեռեալսն յուղարկէին։ Իսկ յետ մահուան նորա այնուհետև ամենայն մարդ առին հրաման համարձակութեամբ ի թագաւորէն, թողուլ զկանայս զամուսինս իւրեանց. էր զի մի այր տասն կին փոխէր. և առ հասարակ յանօրէնութիւն դարձան միանգամայն։ Ապա յետ մահուան Ներսիսի յորժամ զմեռեալսն լային, փողովք և փանդռօք և փոօք զկոծսն պարուցն կաքաւելով, զտիգսն հատեալս, զերեսս պատառ-

եալս, արք և կանայք պղծութեամբ ճիւաղութեամբ պարուք դէմ ընդ դէմ հարկանելով, և կամ ափս հարկանելով, զմեռեալսն յուղարկէին։

Իսկ յամսն Ներսիսի զաղքատս բնաւ ամենևին ի մոյր ոչ տեսանէր ընդ ամենայն սահմանսն Հայոց. այլ անդէն ի հանդստեան նոցին, այսինքն յօրկանոցսն, ամենայն մարդիկ տանէին զամենայն պիտոյս նոցա. անդէն իսկ անկարօտ յամենայն ումեքէ լցեալ էին։ Իսկ յետ մահուն քահանայապետին թէ առնէր ոք հանդիստ աղքատացն, մեծ պատիժս կրէր ի թագաւորէն։

Իսկ յաւուրսն Ներսիսի ընդ ամենայն երկիրն Հայոց կարգք պաշտաման եկեղեցւոյն մեծապէս պայծառացեալ էր, և բազմութիւն սրբոց պաշտօնէիցն կանոնելոցն։ Եւ յիշատակ սրբոց վկայից յաւուրս նորա յամենայն տեղիս Հայոց մեծախումբ ժողովովք հանապազ պայծառանային* և պատիւ հարցն եպիսկոպոսաց յամենայն գաւառս Հայոց յաճախէր ըստ արժանի իւրեանց. և կարգք վանականաց և ի չէնս և յանչէնս առ հասարակ ծաղկեալ։ Այլ ամենայն եղծեալ ապականեցաւ խանգարեցաւ յետ մահուան նորա։

---

(*) Ասոնք վանքերու ուխտագնացութիւններն են՝ որ մինչեւ ցարդ կը կատարուին Հայաստանի մէջ՝ եւ որոց միջոցին ամեն տեսակ աղտեղութիւն եւ անբարոյականութիւն տեղի կունենան սովորաբար:

Իսկ յաւուրս քահանայապետութեան Ներսիսի ամենայն գաւառք Հայոց յամենայն ի չէնս և ի գեւղս յամենայն կողմանս Հայոց առ հասարակ ի հրամանէ քահանայապետին էին չինեալ օտարատունք հիւանդանոցք օտարանոցք. և ամենայն մարդիկք երկրին Հայոց էին պտղաբերք և ողորմածք առ ի յիչել զաղքատս և զնեղեալս զտառապեալս և զօտարս, զհարստահարս, զնըժդեհս, զպանդուխտս, զհիւրս զանցաւորս. և էր նոցա կարգեալ վերակացուս սրբոյն Ներսիսի, և դարմանս ի տեղեաց տեղեաց։ Իսկ յետ մահու նորա աւերեաց զայն ամենայն թագաւորն Պապ, և անարգեաց զպատիւ եկեղեցւոյ. և բազում ինչ կարգ և կանոնաց ուղղութեան յօրինուածոց՝ զոր եդ հայրապետն Ներսէս, և անցեալ դարձեալ ի մոռացօնս զամենայն կարգեալն տապալէր։ Յետ նորա ելեցն աշխարհէս բազում գաւառք Հայոց և բազում մարդիկ ի հնութիւն դիւապաշտութեան դարձաւ, և ընդ բազում տեղիս Հայոց կուռս կանգնեցին ի համարձակութենէ թագաւորին Պապայ*. զի ոչ զոյր յանդիմանիչ, և ոչ ոք էր այն՝ յորմէ խիթային. զինչ և կամէին գործել, համարձակութեամբ գործէին. բազումք պատկերս կանգնեալ, երկիր պագանէին։

---

(*) Ուրեմն Պապ կուռք ալ պաշտեց, կամ քաջալերեց կռապաշտութիւնը. ի՞նչ յանդուգն ստութիւն. հաւանական է որ ազատամտութեամբ վարուեցաւ այլակրօնից հետ *եւ չհալածեց* զնոսա:

«Եւ հատ ևս յարքունիս Պապ թագաւոր զհող եկեղեցւոյն, զոր տուեալ էր թագաւորին Տրդատայ առ մեծաւն Գրիգորիւ քահանայապետիւ ի ծախս պաշտաման եկեղեցւոյն ընդ ամենայն երկիրն Հայոց։ Զի յեւթն հողոյն զհինգն հատանէր յարքունիս, և զերկուսն միայն թողոյր երկուս հողս։ Եւ ըստ հողոյն թողոյր երկուս երկուս առ գիւղ մի երէց և սարկաւագ, և զայն ի սպասու կացուցանէր յիւր ի ծառայութեան զեղբարս և զորդիս երիցանցն և սարկաւագացն։ Զի նմա այսպէս թուեցաւ՝ եթէ զայն չար ինչ կամացն հեճուկս Ներսիսի առնիցէ ի կենդանեաց առ մեռեալս, վասն թշնամութեանն՝ զոր ունէր ընդ նմա։ Եւ զայն ոչ ածէր զմտաւ՝ թէ զանձն կորուսանէ։ Եւ ի ժամանակին նուազէին ամենայն կարգք եկեղեցւոյ պաշտամանն սպասուցն յամենայն երկիրն Հայոց*»։

Ե. Եւ յիրաւի Պապ իւր անձը կորոյս։

Անօրէն մատնիչներ՝ Հայրենեաց թշնամիներ՝ որոց արժանի պատուհասն՝ ինչպէս ըսած եմք այլուր՝ շատ պիտի չուշանար՝ իրենց դժոխային խորհրդոյն գործադիր ընելով զՏերէնդ չարախորհուրդ խռովարարը՝ որ զՊապ պաշտպանելու համար ի Հայաստան նստող Հռովմէական

(*) Բուզ. դպր. Ե. գլ. ԼԱ։

լեգէոնայ սպարապետն էր, զրկեցին զՀայաստան իւր մեծագոյն արքայէն՝ և իւր անկախութենէն, զի Պապէն վերջ Հայոց անկախութիւնն այլ ևս անուանական է։

Կը զարմանանք թէ Պապի պէս հանճարեղ իշխան մը ի՞նչպէս հաւատարիմ մնաց Բիւզանդեան երերուն կայսրութեան դաշնակցութեան, և չընտրեց Շապուհի նիզակակցութիւնը՝ զոր այնչափ անգամ թախանձանօք իրեն առաջարկեց ծերունի՝ այլ գոռ Սասանեանը, ինչպէս կը վկայէ Ամիանոս։ Սակայն Արշակայ և Փառանձեմայ ողորմ վախճանը և երկրին աւերը՝ որոց պատասխանատուութիւնն՝ ստոյգն ըսելով՝ աւելի դաշնակից Հռովմայեցւոց վրայ կը ծանրանար՝ արգիլած ըլլալու են զՊապ՝ զիջանելու Շապհոյ առաջարկութեան՝ որ թերևս փրկարար պիտի ըլլար Հայոց։

Պապի թշնամիներն անոր մահուան պատճառն ալ խեղաթիւրեցին։

Այսպէս Խորենացին կը պատմէ թէ՝ Պապ ապստամբիլ ուզելով՝ Թէոդոս կայսրը* զինք բռնել տուաւ Տերէնտիանոս քաջ զօրավարին՝ և երկաթեղէն կապանօք զնա իւր առջև հանելով հրամայեց սակրով անոր գլուխը կտրել՝ փոխարէն իւր անզգամութեան:

(*) Արդեն վերը ըսինք որ Պապի ատեն Թէոդոս կայսր չկար:

*Իսկ Բուզանդ՝ ինչպէս միշտ՝ նոյնպէս և այս առթիւ պատմական ստոյգ տեղեկութիւններ կուտայ Պապի մահուան վրայ՝ միայն պատճառը կ'անգիտանայ և ինքն ալ ապստամբութեան կ'ընծայէ զայն։*

*Այլ Ամիանոս ժամանակակից պատմիչը՝ ամեն բան ստուգապէս կը պատմէ՝ մահուան գործադրութիւնն ալ ականատեսներէ քաղելով։*

*«Բայց Պապայ լուեալ՝ եթէ մեծն Թէոդոս ել ի Բուզանդիոյ ի Հռոմ կոյս, և մտեալ ի Թեսաղոնիկ հանդերձ սպայիւն, և յաղագս իշխավանին եղև խռովութիւն ընդ նա և ընդ քաղաքացիսն, և մարտ խռովութեան, և յաղթեալ ինքնակալին՝ սատակեաց ի քաղաքացեացն արս հնգետասան հազար։ Զայս լսելով Պապայ, վարկուցեալ յերկարել այսպիսւոյ խռովութեան, արհամարհեալ նշկահեաց. և գրգռեալ զնա կորստեանն իւրոյ, հալածեաց զՏերէնտիանոս հանդերձ զօրուն. և սկսաւ պատրաստել ի պատերազմ։ Եւ հասեալ հրաման ի մեծէն Թէոդոսէ, ընդ կրունկն դարձաւ քաջն Տերենտիանոս*։ Եւ ըստ իւրում պատահման բախտին յանկարծակի անկեալ ի բանակն, զոմանս կոտորեալ սրով, և զոմանս փախստեայս արարեալ. ուր սաստկապէս նահատակեալ քաջութեամբ ընդդիմամարտ լի-*

---

(*) Այն *քաջը* որ զօրքովը մեկտեղ *փախեր էր* Պապայ առջեւէն:

ներ Գնէլ նահապետ Անձևացեաց և սպարապետ Պապայ Արևելեան զօրուն. զոր յաղթողին Տերենտիանոսի իւրովի արարեալ սուսերաւ կիսակտուր զգլուխ նորա, ըմբռնեաց զթագաւորն Պապ*։ Եւ Պապայ յաղերս աղաչանաց անկեալ, զի մի՛ մեռցի, այլ յանդիման լինել արքայի. և քաջին Տերենտիանոսի գթացեալ՝ շնորհեաց նմա զմաղթանսն։ Եւ երկաթեղէն կապանօք երթեալ առաջի մեծին Թէոդոսի, ըստ իւրում անզգամութեանն սակրով վճարի, թագաւորեալ ամս ե՛ւթն**»։

6. «Եւ շրջեաց զմիտս իւր թագաւորն Պապ և խոտորեաց զսիրտ իւր ի թագաւորէն Յունաց, և կամեցաւ խառնել զսէր իւր և առնել միաբանութիւն ընդ թագաւորին Պարսից։ Եւ սկսաւ թիկունս իւր առնել զարքայն Պարսից, և արձակել անդրէն հրեշտակս յաղագս միաբանութեան։ Եւ առաքէր հրեշտակս առ թագաւորն Յունաց, եթէ Կեսարիաւ հետ՝ և տասն քաղաք մեր լեալ է, արդ ի բաց տուր. և զՈւռհա քաղաք շինեալ է նախնեացն մերոց. արդ եթէ ոչ կամիս խանգար ինչ առնել, տուր ի բաց. ապա թէ ոչ, կռուիմք մեծաւ պատերազմաւ։ Այլ Մուշեղ և

(*) Կարծես թէ օտար պատմիչ մ'է՝ որ կը հրենուի Հայոց պատմութեան վրայ:

(**) Խոր. Գ. ԼԹ.

ամենայն իշխանքն Հայոց շատ եղին ի մտի ար-
քային, զի մի քակեսցէ զուխտ յերկրէն Թա-
գաւորութենէն Յունաց, և ոչ անսայց նոցա, և
յայտնեաց զթշնամութիւն իւր՝ զոր ունէր ընդ
Թագաւորին Յունաց։

«Այլ իշխանքն Յունաց և զօրքն նոցին տա-
կաւին էին յերկրին Հայոց. և անուն իշխանացն՝
միումն Տերէնտ, միւսումն Ադէ։ Եւ յղեաց դես-
պան մի գաղտուկ Թագաւորն Յունաց առ իշխանսն
զօրացն իւրոց՝ որ էին յերկրին Հայոց, և հրա-
ման տայր սպանանել զԹագաւորն Հայոց զՊապ։
Եւ եղև իբրև ընկալան զայս հրաման ի Թագա-
ւորէն Յունաց իշխանքն իւր՝ որ էին ի Հայոց
երկրին, սպասէին մահու ի դէպ՝ սպանանել
զԹագաւորն Հայոց զՊապ։

Եւ եղև ի դիպան ժամանակի իբրև գիտա-
ցին Տերէնտն՝ և Ադէն զօրավարքն զօրացն Յու-
նաց՝ թէ միայն է Թագաւորն Հայոց Պապ, և ա-
մենայն մեծամեծքն և զօրքն Հայոց չէին անդ,
և էր Թագաւորն Հայոց Պապ բանակեալ ի դաշ-
տին ի Բագրաւանդ գաւառի ի Խու անուն տեղ-
ւոյն, և բանակ զօրացն Յունաց բանակեալ էր
անդէն մօտ առ բանակին Հայոց արքային, ապա
զօրավարն Յունաց հաց մեծապէս գործեալ՝ ընթ-
րիս հրաւիրեալ կոչեցին զՄեծ* Թագաւորն Հա-

---

(*) Պէտք է գիտնալ որ այս *մեծ* տիտղոսը Բու-
զանդ ստուգիւ մեծ արքայից կուտայ, օրինակի համար

*յոց զՊապ մեծապէս ըստ արժանաւորութեան նորա, որպէս օրէն էր զայր թագաւոր ի հաց մեծ կոչել. և առնէին կազմութիւն պատրաստութեան։*

*«Եւ եկեալ թագաւորն Պապ յընթրիս, մըտեալ բազմեցաւ յուտել և յըմպել։ Եւ իբրև մտանէր արքայն ի խորանն Տերէնտի զօրավարին Յունաց, և լէգէոն սպարակիր հետևակն վահան ի ձեռն, սակուր զգօտւոյ, շուրջ ի ներքոյ զորմովք խորանին պատեալ պսակէին. սոյնպէս և արտաքոյ կազմէին ի ներքոյ կուռ վառեալք, և ի վերոյ հանդերձք զգեցեալք պատրաստէին։ Իսկ թագաւորն Պապ համարէր ի միտս իւր թէ ի պատիւ ինչ նորա զայն առնիցեն։ Եւ մինչդեռ յընթրիսն ուտէր, սակրաւոր զօրքն ի թիկանց կուսէ նորա կարգեալք պսակեալք կային շուրջ զնովաւ յամենայն կուսէ։ Իբրև ընդ գինիս մըտին, որպէս զառաջին ուրախութեանցն նուագն մատուցին արքային Պապայ, և առ հասարակ թմբկահարք և սրընգահարք քնարահարք և փողահարք իւրաքանչիւր արուեստօք պէսպէս ձայնիւք բարբառեցան։ Եւ վահանաւոր լէգէոնին հրաման ետուն. և մինչ դեռ թագաւորն Պապ զուրախութեան գինին ունէր ի մատունս իւր, և*

---

Արշակայ Բ. ի Տրդատայ, Պապի։ Պապ իրօք մեծ եւ պատկառելի էր իւր ժամանակակից իշխանաց եւ *յոյժ սիրելի* հայ ժողովրդին։

նայէր ընդ պէսպէս ամբոխ գուսանացն, ահեակ ձեռամբն յարմուկն՝ յոր յեցեալ բազմեալ էր՝ ունէր տաշտ ոսկի ի մատունս իւր, իսկ աջ ձեռնն եդեալ էր ի դաստապան Նրանին՝ զոր կապեալն էր յաջու ազդերն իւրում, և մինչ դեռ բերանն ի բաժակին էր յըմպելն, և աչօքն յառաջ կոյս պշուցեալ հայէր ընդ պէսպէս ամբոխս գուսանացն, հրաման լինէր ակնարկելով զօրացն Յունաց։ Եւ լէգէոն սակրաւորքն երկու ի Թիկանց կուսէ կային ի սպասու ոսկիկմբէ վահանօքն յանկարծօրէն կից ի վեր առեալ զսակուրսն, զարկանէին Թագաւորին Պապայ. մին կշիռ զուլն հարկանէր սակրաւն, և միւսն ևս սակրաւորն զաջ թաթ ձեռինն՝ որ կայր ի վերոյ դաստապանի Նրանին՝ հարկանէր, կտրէր և ի բաց ընգենոյր։ Անդէն ի բերանս տապալէր Թագաւորն Պապ. և գինին տաշտիւն և արիւնն պարանոցին նովաւ հանդերձ ի վերայ բաժակալ սկլտեղն անկանէր առ հասարակ. և անդէն սատակէր Թագաւորն Պապ։ Ընդ շփոթելոյ տաճարին խռովութեան՝ Գնէլ տէր գաւառին Անձևացեաց յոտն կացեալ յիւրմէ բազմականէն, հանեալ զիւր սուսերն՝ հարկանէր զմի ի լէգէոնաց անտի սպանանէր, յայնցանէ՝ որ հարին զԹագաւորն։ Ապա Տերէնտ զօրավարին Յունաց զիւր սուսերն հանեալ ածէր, տարակաց ի գլխոյն Գնելոյ զսկաւառակն գլխոյն ի վերայ աչացն ի բաց ընգե-

նոյր։ Եւ այլ ինչ ոք ոչ կարաց յանդըգնել ա-սել ինչ ընդ նոսա և ոչ ինչ*»։

Այս առտիճան գաղանական գործ մը՝ որ մի՛ միայն վայրենեաց մէջ կը գործուի՝ և որուն օ-րինակը հազուադէպ է նոյն իսկ բարբարոսաց մէջ՝ ի՞նչ ներգործութիւն պարտ էր ընել Հայոց վրայ։ Անշուշտ բոլոր մեծամեծներ միաբանելու և մինչև իրենց արեան վերջին կաթիլն՝ վրէժ-խնդիր ըլլալու էին ազգին անարգեալ պատ-ւոյն՝ ինչպէս ըրին Քատուացիք յԵւրոպա՝ որոց թագաւորը ճիշդ մեր Պապին պէս վատ խաբէու-թեամբ սպաննեցին Հռովմայեցիք խնջոյքի մէջ՝ մի և նոյն ժամանակ։

Սակայն մեր իշխաններ անցան ջուր Աստան, և իրենց գլուխը անարգաբար խոնարհեցին ի-րենց արքային սպանչին սրոյն ներքև։ Ասոնցմէ ոմանք՝ ինչպէս յայտնի կերևի՝ կամակից և թե-լադիր իսկ էին սպանման. այս կարգէն կը տես-նեմք մեք նաև Մուշեղ սպարապետ և Հայր մարդպետ։ Մուշեղի գործակցութիւնը պատմու-թեան ընթացքէն ակներև է։

«Եւ ժողովեցան եկին ամենայն իշխանքն Հայոց մեծամեծք ի մի վայր ի միասին, և Մու-շեղ սպարապետն և Հայր մարդպետ, և ամե-նայն իշխանքն ասէին. Զի՞նչ արասցուք կամ զի՞նչ գործեսցուք, խնդրեսցո՞ւք զվրէժ թագա-

(*) Բուզ. դպր. Ե. ԼԲ։

ւորին մերոյ, թէ ոչ: Եւ ապա հաստատեցաւ այս բան ի խորհրդեանն, և ասեն. Ոչ կարեմք հեթանոսաց ի Պարսկաց ի ծառայութիւն մտանել, և թշնամի առնել զթագաւորն Յունաց. և ոչ զերկոսեան թշնամի առնել, և ոչ առանց միոյ թիկանց կարեմք կեալ: Ապա եկաց այս բան ի խորհրդին, թէ զինչ եղեւ՝ ահա եղեւ, թող ծառայեսցուք թագաւորին Յունաց. կացցուք ի հնազանդութեան իշխանութեան թագաւորութեանն Յունաց. զիարդ եւ կամք իցեն թագաւորութեան Յունաց, արասցեն մեզ: Եւ ոչ ինչ արկին ի միտս, կամ վրէժ խնդրել, կամ այլ ազգ ինչ իրս առնել. այլ անցին կացին լուռ*»:

### 374 ՅԵՏ Ք.

7. Մինչդեռ յԵւրոպա կը դառնար փոթորիկն՝ որ յուզեցաւ Մարկեղիանոսի խարդախութեամբ և Քատուաց արքային վատաբար խողխողմամբ՝ յԱրևելս կը կատարուէր նոյն օրինակ դաւաճանութիւն մը յանձին Պապայ** արքային

(*) Բուզ. դպր. Ե. գլ. ԼԳ: Արդեօք մեր ազգին այս աստիճան անտարբերութեան համա՞ր է որ լատին մեծ պատմագիր Տակիտոս ծանր նախատինք մը կընէ մեզ ըսելով. “Հայերը ստրկութեան վարժեալ ժողովուրդ մ'են„:

(**) Ամիանոս Պապին *Para* կըսէ: Այս բառը Պապին լատին թարգմանութիւնն կերեւի:

*Հայոց։ Պատմեմ իմացած մանրամասնութիւններս այս անարգ գործին վրայ։*

*Այս մանուկ արքային գործերը չարունակ ամբաստանութեան նիւթ էին առ Վաղէս՝ յաճախ խեղաթիւրուած այն տեսակ մարդոց կողմէ՝ որ հասարակաց դժբաղդութենէն շահ կը հանեն՝ ի չարս որոց պէտք է նշանակեմ նախ և առաջ Տերէնտ դուքս՝ որ թէպէտ աչք ի խոնարհ, երկչոտ քայլով, տխրադէմ ոմն էր, այլ սակայն իւր բոլոր կենաց մէջ ամենայանդուգն խռովարար և խառնակիչ մ'եղաւ։*

*Տերէնտ դաւաճանութիւն կը նիւթէր միաբանութեամբ քանի մը Հայոց՝ զորս իրենց վատ գործերը վտանգաւոր կացութեան մը մէջ դրեր էին հանդէպ իրենց կառավարութեան։ Նամակ նամակի վրայ կը գրէր յարգունիս կայսեր, անդադար կրկնելով Դղակայ և Արտաւանայ դէպքը*, նկարագրելով զմանուկ իշխանն սարսափելի բարկասիրտ՝ և իւր կառավարութիւնն իբրեւ մարմնացումն բռնաւորութեան, և այս այնչափ կրկնուեցաւ՝ որ հրաւէր գնաց առ Պապ երթեալ ի Տարսոն Կիլիկեցւոց՝ սա պատրուակաւ թէ յոյժ կարևոր իրաց վրայ պիտի խորհրդակցին իրեն հետ։ Հոն իրեն արքայավայել ընդու-*

---

(*) Այս Դղակ՝ ինչպէս տեսնուեցաւ անկէ առաջ՝ մատնիչ դաւաճան մ'էր որ չարամահ սպանուեցաւ Պապի հրամանով. իսկ Արտաւանը չկրցանք գտնել մեր պատմութեան մէջ. գուցէ չարագործի մը անուան շփոթութիւնն է։

*նելութիւն ընելով՝ զինք հսկողութեան ներքեւ պահեցին, այնպէս որ չկրցաւ՝ ոչ կայսեր ներկայանալ, եւ ոչ իսկ բան մը հասկընալ զինք շրջապատող անշշունջ բերաններէն՝ թէ ինչո՞ւ համար կանչուած էր։ Վերջապէս մարդուն մէկը գաղտնի իմացուց իրեն՝ թէ Տերէնտ իւր նամակաց մէջ կըսէր կայսեր թէ՝ պէտք է յօգուտ մեր յարաբերութեանց ընդ Հայս՝ ուրիշ արքայ մը դնել անոնց վրայ, թէ՝ ատելութիւնն՝ որ կար ընդդէմ Պապի եւ անոր դարձի երկիւղը պիտի նետէին զՀայաստան մինչեւ իսկ ի գիրկ Պարսից՝ որոց տիրապետութեան տենչը պատրուակի մը կսպասէր՝ եւ Պարսք ամեն միջոց ի կիր պիտի արկանէին առ այս՝ աղերս, դրամ կամ բռնութիւն*։*

*Ցայնժամ Պապայ աչք կը բացուին իւր գըլ-*

(*) Դիտելու առաջին կարգի կարեւորութիւն ունեցող պարագայ մը սա է՝ որ Տերենս իւր նամակաց մէջ բնաւ Մեծին Ներսիսի թունաւորման, սպանման խօսք չըներ: Կրնայ առարկուիլ որ Վաղէս արիոսեան ըլլալով թշնամի էր հայրապետին՝ եւ անոր սպանումը իւր փոյթը չէր: Սակայն այնպէս չէ: Վաղէս՝ կրնար քաղաքական յոյժ մեծ սխալ մը համարել Պապի համար զՆերսէս թունաւորելը, եւ պատրուակելով՝ որ երկիրը կապստամբի Պապի դէմ՝ որով մեծ դժուարութիւն մը կը ծագի Հռովմայեցւոց՝ կրնար կըսեմ, այս կերպով զահընկեց ընել իրաւամբ զՊապ: Այս ջախջախիչ փաստը բոլորովին կը կարկեցընէ Պապի զրպարտիչները:

խուն եկած փորձանքին վրայ՝ կը տեսնէ թէ զէնքը խաբեր են՝ թէ՝ իւր փրկութեան միակ ելքն վաղ ընդ փոյթ փախուստն է միայն։

Ուստի խորհուրդ ընելով իւր բարեկամաց հետ՝ կ'ընտրէ իւր հետ առած մարդոցմէն երեք հարիւր ընտիր հեծեալ, և յանդգնութեամբ մեռնիլն աչք առնելով՝ հաստատամտութեամբ կը մեկնի այս փոքրիկ գնդաւ՝ թէպէտ արդէն օրն իրիկուն էր եղած։ Գաւառին չահապը իմանալով զայս՝ իսկոյն ոստիկանաց սպայի մը հետ ետևէն կը վազէ, կը հասնի անոր՝ քաղաքին արուարձանին մէջ, և տագնապաւ կստիպէ ետ դառնալ։ Բայց իւր ստիպումներն անօգուտ եղան, և հարկադրուեցաւ իւր գլուխն ազատելու համար ետ քաշուիլ։

Ցայնժամ լեգէոն մը ղրկեցին զհետ Պապի, որ տեսնելով լեգէոնաց գունդին մօտիլը, ետ դարձաւ իւր ընտրելագոյն հեծեալներով՝ և նետից սոսկալի տարափ մ'արձակեց ընդդէմ լէգէոնին՝ այլ միայն ընդ օդս ի վեր նետելով, ասով հանդերձ լեգէոնն ի փախուստ աճապարեց, այնպէս որ զօրական և տրիբուն ետ դարձան աւելի արագ քան որչափ չէին եկած։ Այլ ևս վախ չկար հալածուելէ։ Բայց երկու օրուան սոսկալի յոգնութենէ վերջ գունդը հասնելով Եփրատայ եզերքը՝ մազ մնաց որ հոն արգիլուէր։ Գրեթէ ոչ ոք գիտէր լողալ*։

(*) Այս թերութիւնը Հայաստանի տեղական թերու-

Գունդին պետը ոչինչ նուաղ տագնապի մէջ էր։

Վերջապէս երկար մտածելէ յետոյ հնարք մը գտան՝ որ ստիպողական հարկը երբեմն կը սորվեցնէ։ Մօտակայ տուներէն շատ մը մահճակալներ բերել տուին՝ անոնց իւրաքանչիւրին տակ երկերկու տիկ կապեցին։ Այն գաւառը այգեբեր ըլլալով՝ հոն տիկ շատ կար։ Հայոց մեծամեծները և թագաւորին ինքնին իրենց անձը վտանգի մէջ դրին, իւրաքանչիւր ոք մէյ մէկ տիկի վրայ նստած՝ իրենց ձիերը յետուստ քաշելով և հոսանքը շեղակի ճեղքելով։ Այսպէս հասան միւս եզերքը՝ բայց ամենամեծ վտանգով։ Մնացեալները անցան ձիով և ի լող կռուելով կոհակաց դէմ և յաճախ ծածկուած ալիքներէն։

Ամենքը անցան միւս կողմը, թրջած, չընչասպառ, բայց վայրկիկ մը հանգչելէ վերջ՝ առաւել ևս փութանակի շարունակեցին իրենց ճամբան։ Կայսրը չափազանց տրտմեցաւ Պապի փախստեան վրայ՝ որոյ՝ իւր դաշնակցութենէն բաժանումն ստոյգ կը նկատէր։ Փութաց անոր ետևէն ղրկեց Դանիէլ և Բարսիմէոս Սկուտերաց տրիբունը և Հազար ալեղնաւոր մեկնակաղէն, պատուէր տալով բռնել և իրեն բերել փախըս-

Բինանն է. գի. Հայք Եւրոպական ծաս ազգաց մանաւանդ Յունաց պէս ծովափնեայ չ'ըլլալով՝ ջրոյ վարժ չէն:

տականը։ Այս երկու սպայները լաւ գիտէին երկրին ճամբաները, և մինչդեռ Պապ իր արագութեան օգուտը կը կորուսանէր պտոյտներ ընելով՝ զի չգիտէր ճամբաները, անոնք կիրճէ մ'անցնելով՝ յաջողեցան անկէ աւելի առաջ անցնիլ և անոր դէմը կտրել։ Յետոյ իրենց միացեալ զօրքերով բռնեցին՝ իրարմէ երեք մղոն հեռի երկու ճամբաներ՝ որոնցմէ մէկէն անշուշտ պիտի անցնէր Պապ, և հոն պատրաստ կեցան զայն ջախջախելու։

Դիպուածը միայն իրենց յատակագիծն ի դերև հանեց։ Ճանապարհորդ մը՝ որ մեր կողմը կը վերադառնար՝ նշմարելով որ երկու ճամբաներն ալ գոց են այս կրկին դաշանով՝ զօրաց չպատահելու համար՝ բռնեց ծառախիտ միջին ճամբայ մը՝ և եկաւ ինկաւ Հայոց մէջ՝ որ կը հանգչէին։ Բռնեցին զինքը տարին առ թագաւորն. մարդը դաղտնի իմացուց անոր իր տեսածը. արքայն զայն իւր քովը պահեց՝ անոր վնաս մը չընելով։ Պապ առանց իմացընելու ումեք իւր իմացածը՝ անմիջապէս ձիաւոր մը ղրկեց աջ կողմէն՝ պատուէր տալով երթալ պատրաստել իրենց համար բնակարան և ուտեստ. երբ նա հեռացաւ՝ ձախ ճամբէն ղրկեց երկրորդ մը՝ որ չէր գիտեր թէ ինչ պաշտօն ունէր իւր ընկերը։ Այս զգուշութիւնն ընելէ յետոյ՝ վստահութեամբ մտաւ իւր մարդոց հետ՝ ուղևորին առաջնորդութեամբ՝ այն ճամբան՝ ուսկից այս

*մայրը եկած էր՝ և ուրկէց հազիւ դրամ մը կրնար անցնիլ, և ձգեց իր ետևը իր Թշնամիներն՝ որ ձերբակալելով երկու մարդիկ որ առաջուց ղրկուած էին՝ զանոնք խափանելու համար՝ կը կարծէին թէ բաւական է որ իրենց ձեռքը երկնցընեն և ահա կը բռնեն գլխաւոր որսը։ Մինչդեռ անոնք հոն կսպասէին՝ Պապ իւր երկինը կը մտնէր ողջ առողջ։ Հոն մեծ ցնծութեամբ ընդունուեցաւ և չհասկընալ ձևացընելով իրեն եղած Նախատինքը՝ դարձեալ հաւատարմութեամբ կը պահէր մեր դաշնակցութիւնը։*

*Երբ Դանիէլ և Բարսիմէոս դարձան՝ ծաղու և ծանակի հեղեղ մը Թափեցաւ իրենց գլխուն վրայ։ Խօսք չմնաց որ չըսէին անոնց անճարակութեան և անհոգութեան վրայ։ Առջի բերան ապշեցան այս նախատանաց տակ, բայց օձի պէս կը պահէին իրենց Թոյնը՝ ի պատեհ ժամու ապահովապէս զայն ցայտեցընելու ընդդէմ անոր՝ որ զիրենք խաբած էր։ Թեթևցընելու համար իրենց կոշտ սխալմունքը և նուաղեցընելու համար այն դերազանց ճարտարութիւնը որ զիրենք ձգած էր այս Թակարդին մէջ՝ իշխանին (Վաղէսի) դիւրահաւան ականջին շարունակ կը յեղյեղէին առատառատ բաներ Պապի վրայ՝ կարծեցընելով թէ նա Կիրկէի* հմայութեան դաղտ-*

(*) Կիրկէ՝ հռչակաւոր հմայ դիցուհին՝ զՈդիսեւս իւր կղզին պահելու համար՝ անոր ընկերաց ըմպելի մը խմցընելով զանոնք փոխեց խոզի՝ ըստ առասպելաց։

*նիքը դիտէր՝ այլակերպութիւններ գործելու և ուզած անձը իւր մտաւոր կարողութենէն զրկելու համար։ Պապ իրենց ձեռքէն փախչելու համար՝ իրենց աչքը կապեր հիմայեր էր, անկենդան առարկայի մը ձևն առնելով*։ Եթէ զնա՛ ողջ թողէին՝ ի՞նչ վտանգ պիտի չբերէր այն կառավարութեան գլխուն՝ զոր այսպէս խաղալիկ ըրած էր։*

*Այս խօսքերը վերջապէս անադորոյն ատելութիւն մը ձգեցին կայսեր սրտին մէջ։ Ամեն օր մէյ մէկ ծրագիր կը շինուէր Հայոց թագաւորը գաղտնի կամ յայտնի ուժով կորուսանելու համար։ Տրայիանոս յանձնած մեր զօրաց հրամանատարն էր ի Հայս. այս պաշտօնը գաղտնի անոր յանձնեցին։ Այս մարդն ամեն հնարք ի գործ դրաւ իշխանը խաբելու համար։ Երբեմն վերջին աստիճան ապահովիչ նամակներ կը կարդար Պապի՝ Վաղէսի զգացմանց մասին, մերթ կերթար ինքնին անոր սեղանակից կըլլար։ Վերջապէս՝ ամեն պատրաստութիւն ընելով՝ զայն ճաշի հրաւիրեց անօրինակ յարգանաց ցոյցերով։ Պապ վստահ և անկասկած եկաւ ժամադրեալ տեղը. զինքը բազմեցուցին պատուոյ աթոռը։ Խնջոյքը փառաւոր էր, որահը կորոտար զինուորական նուագօք, և իրարու յաջորդող բաժակ-*

---

(*) Հարկ կը համարիմ կրկնել աստ՝ որ Վաղէս չափազանց կը վախնար կախարդներէ։

ներ սկսեր էին տաքցընել բազմականաց գլուխը, և ահա տանուտէրը դուրս ելաւ բան մը պատրուակելով։ Յայնժամ բարբարոս մը՝ Սուբրա կոչուած տեսակէն՝ կը մտնէ սրահը, սուսերամերկ, դէմք արիւնռուշտ և կը յարձակի պատանի իշխանին վրայ՝ ժամանակ չտալով նմա հասնիլ մինչև դուռը՝ զոր արդէն կղպեր էին զգուշութեամբ։ Պապ կը տնկուի կը կանգնի իւր աթոռին վրայ և կը քաշէ դաշոյնը իւր կեանքը ցյետին շունչը պաշտպանելու համար. բայց կիյնայ գետինը՝ կուրծքին ուղղուած հարուածով մը և կը գլտորի՝ ինչպէս զոհ մը սեղանին վրայ՝ մարմինը հազար ու մէկ վէրքերով խոցոտուած։

Այսպէս ահա հիւրասիրութեան պաշտպան Աստուծոյն աչաց առջև, խրախճանական ցնծութեանց մէջ՝ դաւաճանեցին հիւրասիրութիւնը՝ զոր կը յարգեն Եւքսինեան բարբարոսք իսկ։ Օտարականի մ՚արիւնը վազեց Հռովմայեցւոյ մը սեղանին վրայ՝ իբրև վերջին մեծարանք (իքրամ) հրամցուելով բազմականաց՝ որ այս ահռելի տեսարանէն ցիր ու ցան եղան։ Ցապրիքիոսի սուսերը հեծեց ասոր վրայ՝ եթէ զգացումը կը տևէ կը մնայ յաստեաց անդին. ինք որ հակառակ այն աւերմանց զոր Պիւռոսի զէնքեր գործեցին Իտալիա՝ այնչափ մեծ ազնուութեամբ մերժեց զՊիւռոս թունաւորելու առաջարկը՝ զոր իրեն (Ցապրիքիոսի) կընէր անոր մատակարարը Տիմոքարէս կամ Նիկիաս, և բաց

ատի նամակ կը գրէր նոյն իսկ՝ Պիւռոսի որ զգուշանայ իւր շուրջ պատողներէն։ Ահա թշնամւոյ սեղանն իսկ այսչափ նուիրական էր՝ այն ուղղութեան և իրաւանց դարուն մէջ։ Մեր մարդիկ ուզեցին Սերտորիոսի* օրինակով գոցել Պապի դէմ ի գործ դրուած այս ճիւաղային կատաղութիւնը։ Այո՛, մարդ կրնայ ճարտար պալատական ըլլալ՝ և չգիտնալ առածն Դեմոսթենի՝ միոյն ի փառաց Յունաստանի. «Ոչ անպատուհաութիւնը և ոչ օրինակը կրնան երբէք օրինաւոր ընել բան մը»։

Այսպէս էին Հայաստանի կողմ անցած դէպքեր։ Ասոր հակահարուածն զգաց Շապուհ՝ որ այնչափ եռանդեամբ հետամուտ էր Պապի դաշնակցութեան:

Շապուհ պարտեալ ետ կը դառնար պատերազմէ՝ երբ իմացաւ այս լուրը. չարագուշակ հետեւութիւններ հանեց այս դիպուածէն՝ և դեսպան ղրկեց առ Վաղէս՝ առաջարկելով՝ որ միաբանին ջնջել աշխարհացոյցէն Հայաստանի անունը՝ որ անվերջ կռուոյ նիւթ է երկուց իշխանաց (Պարսից և Յունաց) մէջ։

Ամիանոս Մարկեղինոս գիրք 30**

---

(*) Հռովմայեցի զօրավար՝ որ յաղթեց Մետեղղոսի եւ Պոմպէոսի՝ եւ սպաննուեցաւ իւր մէկ տեղակալէն. 79. Ն. Ք:

(**) Ամիանոս Մարկեղինոս՝ լատին պատմագիրը՝

8. Պապ թէպէտ տակաւին պատանի էր (հազիւ քսան տարու) երբ ամբարձաւ իւր նախնեաց աթոռը՝ սակայն իւր գործերով ցուցուց որ արտաքոյ կարգի հանճար և վարչական կարողութիւն ունէր։ Ինքը մեծ ապագայի և լաւագոյն բաղդի արժանի էր՝ իբրև իշխան և իբրև զինուոր։ Մտածման խորութիւն, յանդգնութիւն, պաղարիւնութիւն և անսասան յարատեւութիւն, ահա ասոնք են իւր նկարագրին էական մասերը։

Ինքը հազիւ 5 կամ 6 տարի իշխեց՝ սակայն ամենէն երկարակեաց նշանաւոր իշխանաց կը հաւասարի իւր փառօք։ Եթէ Բուզանդայ՝ իբրև [illegible] յիշատակած գործոց մէջ չափազանցութիւն չկայ, եթէ իբրև չարագործութիւն նշանակուած գործերը իրօք կատարած է Պապ՝ համաձայնապէս կրնամք ըսել որ՝ Պապ մեր ամենէն կատարեալ արքան է։

Արշակ Բ.ի և անոր Պապ որդւոյն պատմութիւնը մեր ազգային հին կենաց բազմադիմութիւնն է. արքայական իշխանութիւնը, եկեղեցին, նախարարական կալուածատիրութիւնը, զինուոր և ժողովուրդ իրենց բոլոր երեւոյթներով հոն կը տեսնուին՝ իբրև մանրանկարի մը մէջ, այնպէս որ՝ այս երկու իշխանաց պատմութեան

կատարէր 320-390։ Ինքն երկար ժամանակ կեցաւ ի Հայաստանի, և Տիգրանակերտի ի Պարսից առաւել ժամանակ քաղաքին մէջ կը գտնուէր՝ ուստի հազիւ կրցաւ ճողոպրիլ փախչիլ։ Խորենացի Բ.ի Տիրանայ, Արշակ Բ.ի Պապին եւ իւր մինչև երկու յաջորդաց ժամանակակից է։

ուսումնասիրութիւնը լիովին ի վեր կը հանէ մեր ազգին անկման պատճառները։

Արքայ, Նախարար, կաթողիկոս՝ ազգին այս երեք շարժիչ զօրութիւնները շատ անգամ իրարու հետ անմիաբան (incohérent) և հակառակամարտ տարրեր կը տեսնենք. չկայ ժողովրդական բարձրագոյն նկատում և սէր Հայրենեաց ի մեզ ինչպէս ունէին Յոյնք և Հռովմայեցիք։ Մեր զինուորներ թէպէտ առիւծի պէս քաջ են՝ սակայն կարգապահութիւն, հլութիւն և յարատեւութեան ոգի չունին՝ որով շատ անգամ իրենց յաղթութիւնն ապարդիւն՝ և պարտութիւնն անդարմանելի կ'ըլլայ։ Ահա մեր ժողովրդեան և զինուորի վերոյիշեալ այլատարբեր թերութեանց զոհ գացին Արշակայ և Պապի նման մեծ իշխաններ։

Ժամանակը որ ամեն բան կը հինցընէ կը կործանէ՝ շատ ստութիւններ ալ կը ջնջէ, նորանոր ճշմարտութիւններ երևան կը հանէ. ստութիւնը մահկանացու է. միայն ճշմարտութիւնն է անմահ։

Այս երկու թագաւորներ ճշմարտութեան և Հայրենեաց զոհ գացած են. հարկ էր որ իրենց յիշատակը ճշմարտութեամբ բարձրանար, հազար հինգ հարիւր տարուան անիրաւ անկմանէ վերջ։

Եւ ամեն անգամ որ անիրաւութիւն ըլլայ այս մեծ մարդոց դէմ՝ մին արիւնաթաթաւ դանակն՝ միւսն՝ մահաբոյր սուրն յերկին ամբարձած պիտի դոչեն. վա՜յ ապերախտին։

ՎԵՐՋ

# ՅԱՒԵԼՈՒԱԾ

Քննական պատմութիւն Արշակ Բ.ի և անոր Պապ որդւոյն գործը հեղինակին կողմէ Իզմիրեանց կտակի յանձնաժողովին մատուցուած լինելով՝ մասնաժողովը զայն յանձնած էր ի քննութիւն՝ Տիար Մարկոս Աղաբէկեանի որ իր քննադատականի մէջ հետևեալ եզրակացութեան յանգած է անոր մասին։

«Այդ ամենը մեծ ուշադրութեամբ կարդացի, իմ հայեացքէն տարբեր եղած կէտերն ամենէ առաջ ցոյց տուի։ Իսկ ամբողջութեանը մէջ, հեղինակը ցոյց է տալիս, ճշմարիտն ասելով, բաւական բարձր աստիճանի խորատեսութիւն պատմական ուսման մէջ և յաջող գրիչ՝ պատմական ուսման վարդապետ լինելու։ Հեղինակին այդ ձեռնարկութիւնը պատիւ է բերում իրան և այն ազգին, որուն պատկանում է պատմութիւնը, և ինձ համար, ճշմարիտն եմ ասում, մեծ հրճուանք է տեսնել մեր գրական մարդկանց դասը, որ իրանց ազգի և աշխարհի պատմական գրականական և եկեղեցական ուսմանց և գիտութեանց հետն են պարապում և այդպիսի

օգտակար և լուսատու գրական գործեր ընծա-յում ազգին, ինչպէս որ Արշակ Բ.ի և անոր Պապ որդւոյն քննական պատմութեան հեղինակն էր արած, որ ամեն կերպով քաջալերութեան և վարձատրութեան արժանի է։ Յարգոյ յեղինակը մի քանի գործ միանգամայն է կատարած դա իր այդ ձեռնարկութեամբ. Նախ՝ Հայոց պատմու-թեան ուսումնասիրութիւնը արծարծուելուն գըր-գիռ է լինում և կը լինի մեր ազգայնոց մէջ. երկրորդ՝ ազգեան գրականութեան պատմական մասին մեծ ծառայութիւն մատուցանում և կը մատուցանէ, մեր նախնեաց հիանալի պատմու-թեան գրականութիւնը պրպտելով։ Երրորդ, և որնոր յարգոյ հեղինակին նպատակն է և որ նոր գլխաւոր բանն էր, երկու պարթև թագաւորներ, Արշակ Բ. և Պապ, որոնք ինձ կերևայ որ կու-սակցութեան հոգւով մոլուած մի քանի պատ-մագրերու զրոյցներով սև սև ամպերումն են ծածկուած Սանդարամետի դևերու նման, նա՛ այդ երկու թագաւորները դուրս հանելու ջանք է արած այդ ամպերու մէջէն լոյս աշխարհ և մեզ ցոյց է տուած դրանք, իբրև օրինաւոր և շնորհքով թագաւորներ, որոնցմէ առաջինն հայ-րասպան է կարծւում և երկրորդը որբասպան։» (Արևելք 30 յունիս 1889)։

Իզմիրեանց կտակի մասնաժողովը իր կանո-նադրութեան համաձայն յանձնած էր գործը ա-պա երկրորդ քննիչի մը՝ Օրմանեան եպսի, (այժմ.

պատրխարք) որոյ քննադատականի ի պատասխան «Մաղումէի» 1889 յուլիս 6 ի թուոյն մէջ հեղինակի հետեւեալ յօդուածը երեւցաւ, զոր նոյնպէս աստ դնել պատշաճ կը համարիմք։

Վ. Ննադասուրբին

Վ. Ննադասուրբեան

Առ Գեր. Օրմանեան

Իմ «Քննական պատմութիւն Արշակ Բ.ի եւ անոր Պապ որդւոյն» գործոյս վրայ Ձեր քննադատութիւնը՝ կամ լաւ եւս է ըսել՝ պարսաւագիրը կարդացի։

Նախ՝ հարկ կը համարիմ ըսել որ՝ «այնպիսի գրագիտական լաւ գործի մը» (Ձեր իսկ խոստովանութեամբը) վրայ քննադատութիւն ընողը գրագիտական ընտիր լեզու պարտի գործածել։ Ձեր գրածը ծայրէ ի ծայր ռամկական ստորին հայերէն մ՚է, եթէ այս անունը տալ արժան է բառերու խառնակոյտի մը։

Քննադատներու գործերը կարդացա՞ծ էք. Լահարբ, Սէնթ Պէօվ, Վիյըրմէն անմահացած են քննադատելով այն անձինք զորս անմահացուցեր են։

Այս անցողակի՝ այլ կարեւոր դիտողութենէ յետոյ սկսինք Ձեր քննադատականին իրական արժէքն ի վեր հանել։

Ա. Կըսէք. «Գործը մակագրի երես եւ հեղինակի անուն չկրեր, եւ զայն անկողմնակալ դատաստանի նպաստելու համար Յանձնաժողովոյդ

*կողմանէ ձեռք առնուած միջոցներուն հետեւանք կը կարծեմ»։*

*Նոր օրինակ բան է այսպիսի միջոց մը ձեռք առնուլ քննադատութեանց համար, և չեմք հասկնար, թէ ի՞նչ հարկ կար։ Միթէ Պատ. Ցանձնաժողովը կը կասկածէ՞ր Ձեր անկողմնակալութեան վրայ։ Եւ ի՞նչ ապահովութիւն կայ Ձեր այս մասին անգիտութեան՝ քանի որ Ցանձնաժողովոյ երկու անդամներ՝ Արժ. Հարք Հիւնքեարպէյէնտեան և Մկրեան ի Բերա կը բնակին՝ և որոց հետ գրեթէ ամեն օր տեսակցելու պատեհութիւն ունիք։ Բայց Պատ. Ցանձնաժողովոյ ո՞վ զգացուց թէ դուք մասնաւոր հակառակութիւն ունիք ինձ դէմ*։*

*Բ. Ցանձնաժողովոյ տեղեկագիրը կըսէ. «գործը 119 մեծադիր երեսներէ կը բաղկանայ» (անգլիական մեծ էսէյրի ճէտիտ) իսկ դուք կըսէք. «119 հաստարակ երեսներ ունի, ատոնցմէ մէկ մասը վկայութեանց ընդօրինակութեան նուիրուած է՝ որով գրեթէ 60 երեսներու կը վերածուի հեղինակին իսկական աշխատութիւնը, «մեծ» և բազմաշխատ գործ մը չէ, փոքրիկ երկասիրութեան մը պայմանին կը վերածուի». գործի*

(*) **Գործադիր ժողովոյ անդամ Օհաննէս Քահանայ Մկրեան՝ Օրմանեանի սերտ բարեկամը՝ ինչպէս եւ Օրմանեան՝ ազգային գործոց մէջ հեղինակին կողմէ իրենց կրած բարոյական հարուածներու պատճառաւ, խոր հակառակութեան եւ ատելութեան ոգի մ'ունէին անոր դէմ:**

մը մեծութիւնը ինչէ՞ն կը հասկընաք, Գեր. Օրմանեան, թերթերուն չափութենէ՞ն. ուրեմն այս հաշուով Վարք սրբոց և Յայսմաւուրքը ամենէն նշանաւոր գործերն են...։

Գործի մը մեծութիւնը իւր ներքին իրական արժէքին վրայ է, թէպէտ ըլլայ այն «թերթ» մը կամ վաթսուն տող միայն։

Անցեալ տարի՝ Ռընան աշխատութիւն մը հրատարակեց «ազգաց սկզբունքին վրայ». 50 երեսներէ միայն կը բաղկանար այն, սակայն «մեծ» գործ մ'էր. Լա Պռիւեէռի «Նկարագիրք» ըսուած սքանչելի գործին մէջ հեղինակին բուն արդիւնքը հազիւ 70 երեսի չափ կայ. և սակայն այդ գործով Ակադեմիոյ անդամ եղաւ նա և անմահացաւ. Թէոկրիտի հովուերգութիւնք 15 երգեր են. սակայն մեծն Վիրգիլ այն ճիւղին մէջ ատորին մնաց անկէ. Միլըվուա՝ գիտէ՞ք, ինչո՞վ անմահ է, «մէկ երգով մը, Լա չիւթ տը ֆէօյ» անուն փոքրիկ տաղով՝ որ կարծեմ հազիւ «երեսուն տող» կայ։

Մեր Ռափայէլ Պատկանեան ինչո՞վ անմահ պիտի մնայ, գիտէ՞ք, «միայն Մայր Արաքսի երգովը»։

Եւ դուք աշխատութեան տեղ չէ՞ք դներ ընդօրինակուած մասերը. գիտէ՞ք, անոնց ընտրութիւնը, հաւաքումը շատ անգամ աւելի արժէք ունին՝ քան թէ հեղինակի մը բուն գրչէն ելածը։

Դ. Կըսէք. «Արշակայ և Պապի պատմութեան «բոլոր քննադատական մասերն ի նկատ առնուած չեն», այլ պարզապէս փաստաբանական ոճով խօսուած է՝ Արշակ և Պապն արդարացնելու համար»։

Ձեր այս խօսքերէն բան մը չի հասկցուիր. ի՞նչ ըսել կուզէք, քննադատութեան մէջ փաստաբանութիւն չի՞ մտներ. կամ ըսել կուզէք թէ «մեղսակցութի՞ւն» ըրած եմ արդարացնելու համար զԱրշակ և զՊապ. քննադատելի ո՞ր կէտերը դուրս թողած եմ, ինչո՞ւ անոնցմէ մէկ երկուքը չէք յիշեր՝ ինչպէս պարտ էր կարող քննադատի մը։ Եթէ ես՝ Արշակայ և Պապի պատմութեան «ամեն քննադատական մասերն ի նկատի առած չեմ՝» ըստ Ձեզ՝ ուրեմն իմ գործոյս մէջ նպատակիս հասած չեմ, և ուրեմն ինչո՞ւ ձեր եղբայրակցութեան մէջ կըսէք. «Ազգային պատմութեան հետաքրքրական մի կէտը «յաջողութեամբ լուսաբանուած է»։ Քննադատի մը կը վայելէ՞ այս աստիճան հակասութեան մէջ իյնալ։

Դ. Կըսէք. «Քննական պատմութեան «մեծ կէտը» ժամանակագրական խնդիրն է»։ Ո՞ւստի կառնէք այս վճիռը. քննականին չէ՛, այլ ընդհանրապէս պատմութեան գլխաւոր պահանջներէն «մին» է ժամանակագրական ճշդութիւնը. սակայն եթէ ժամանակագրութիւնը դժբաղդաբար վրիպակ ունենայ՝ ի՞նչ կը կարծէք, պատմութիւնն իւր գոյութենէն կը դադրի՞. Նախա-

պատմական ամեն եղելութիւնք, երկրի, մարդուն և իւր գործոց պատմութեան թուականները «ճիշդ» չըլլալով հանդերձ «ստոյգ» չե՞ն. իրողութիւնք միշտ կրնան առաջնորդել մեզի ժամանակագրութեանց վրիպակին ուղղելու «յայտնի» կամ «հաւանական» կերպով։ Այսպէս ուրեմն պատմութեանց մէջ ամենագլխաւոր «կէտը» իրողութիւնքն են։

Եւ ինչէ՞ն հասկցաք որ ես ժամանակագրական կէտը «անտես ըրած եմ»։

Բայց դուք կուզէք եղեր հասկնալ թէ ի՞նչ հիման վրայ դրած եմ իմ ժամանակագրութիւնս՝ որ կը տարբերի Խորենացւոյն ընդունածէն՝ և Բիւզանդայ «ժամանակաց հաշուէն». այդ՝ այլ խնդիր է։

Նախ՝ պէտք է գիտնաք որ Բիւզանդ «ժամանակաց հաշիւ» ցուցած չէ՛. Բիւզանդ միայն անուններ կը յիշատակէ. Բիւզանդայ առաւելութիւնն այն է՝ որ իւր պատմութեան իրողութիւնները ամենամեծ մասամբ կը միաբանին տիեզերական պատմութեան հետ. ի բաց առեալ առասպելական (լէժանտ՚ը) մասերը։

Կերևի թէ դուք լաւ ուսումնասիրած չէք այդ հեղինակը։ Երկրորդ՝ իմ ժամանակագրութիւնս իրեն հիմ ունի տիեզերական պատմութիւնը՝ որ արդիւնք է բաղդատական պատմութեան։ Եթէ տիեզերական պատմութեան հմուտ ըլլայիք՝ այս անօգուտ քաշքշուքով ձեր 25–30

տողերը չէիք գրեր՝ այսինքն ձեր ամբողջ քննադատականին մէկ չորրորդ մասը։

Ես ի սկզբան բաղդատական ժամանակագրութիւն մը չինեցի՝ Հայ, Սասանեան արքայից և Արևմտեան ու Արևելեան կայսերաց՝ որ վերաբերութիւն ունեցած են մեզ հետ՝ սկսեալ ի Տրդատայ, սակայն յետոյ ի բաց թողի. զի այսօր այս ժամանակագրական խնդիրը բաւական լուծուած է՝ պատմութեան քիչ շատ հմուտ անձանց համար. զի Սասանեան հարստութեան հիմնարկութիւնը առաջնորդ բռնելով մեզ՝ անհնար է որ մեծ սխալման մէջ իյնանք։ Ասոր համար ահա հարկ չտեսայ ծանրանալու այս կէտին վրայ։ Աւելին կայ. Ամիանոսի հատուածը Պապի սպանման վրայ՝ որ ամբողջ դրած եմ գործոյս մէջ՝ և որ անգին գանձ մ'է մեր պատմութեան համար՝ բոլորովին կը լուծէ Արշակայ և Պապի ժամանակագրութեան խնդիրը։

Կերևի թէ դուք ոչ Ամիանոս կարդացած էք՝ և ոչ իսկ Հայր Գաթըրճեանի՝ «տիեզերական պատմութիւն» անուն գեղեցիկ գործը՝ որուն ժամանակագրութիւնը յար և նման է իմ ընդունածիս։

Ե. Կըսէք. «Քննական պատմութեան պահանջն էր՝ դիպուածոց շարքն ու կարգը՝ թէ ոչստոյգ գոնէ հաւանական դրութեան վերածուէին բաղդատելով և կշռադատելով թէ հին աղբիւրները և թէ նոր գրողներու տեսութիւնները»։

Ձեր այս գրածէն ալ բան մը չհասկցայ։ Ա՛րդեօք, ըսե՞լ կուզէք՝ թէ պէտք էր գրել որ՝ Արշակ քանի տարու թագաւորեց, թագաւորութեան երկրորդ տարին ի՞նչ ըրաւ, քանի՞ տարու էր՝ երբ ամուսնացաւ, քանի՞ զաւակ ունեցաւ, կինը տգե՞ղ էր՝ թէ գեղանի՝ և այլն և այլն։

Գեր. Օրմանեան, քննական պատմութիւնը անձի մը, ժամանակի մը, կամ անձերու և ժամանակաց գործերը, դիպուածները «մէկ խմորի մը վերածելով» զայնս կը քննադատէ՝ «մերթ ընդ մերթ» յիշելով «ամենակարևոր անցքեր» ու պարագայներ միայն։ Եթէ ես զայս ըրած չեմ՝ հապա ի՞նչ գրած եմ՝ ըստ ձեզ 60 էջի մէջ. «մասա՞լ» կարդացեր եմ։

Կարդացէք Գարագաշեանի քննական պատմութիւնը՝ որ ստուգիւ ազգային մեծ յիշատակարան մ'է, ըստ իս և ըստ ամեն բանասիրաց, միթէ այն իմ գործոյս ընթացքէն տարբեր ընթացք ունի։ Ձեր կարծածին պէ՞ս գրուած է։ Իսկ այս առարկութեան ի նպաստ Ձեր մէջ բերած օրինակներն բոլորովին անտեղի են. զի կըսէք թէ բան մը չեմ գրած Արշակայ Յունաց հետ տևական բարեկամութեան՝ և ի Յունաստան արշաւանաց վրայ։ Ամեն բան ըսած եմ՝ և դուք չէք հասկըցած։

Արշակ՝ Սասանեան և Բիւզանդեան պետութեանց կռիւներուն մէջ իւր գործելու ազատութիւնը պահել ուզեց։ Այդ խորագէտ (ինչպէս կը

կոչէ զայն Յուլիանոս կայսր) և մեծ արքային հզօրին բարեկամ էր միշտ՝ ինչպէս են ամեն արքայք և քաղաքագէտք։ Ասո՛ր համար ահա երբ իւր շահը պահանջէր՝ կը յարձակէր ի Յունաստան, զայն լիովին բացատրած եմ, ինչպէս նաև Պապի ի Տարսոն երթալուն պատճառը։ Կըսէք թէ այս երթալը միայն Ամիանոս կը յիշէ. ուրիշ ո՞վ կուզէիք որ յիշէր. կը ճանչնա՞ք Ամիանոս. Տակիտոսի հաւասար մեծ մարդ է նա, և տիեզերական պատմութեանց հեղինակաց գլխաւոր աղբիւրներէն մին. ուրիշ մէկ երկու աղբիւրներ ալ ինչո՞ւ չէք յիշեր։

Զ. Այսչափ անիմաստ դատափետութենէ յետոյ կընդունիք թէ ես հասած եմ իմ նպատակիս. զի կըսէք. «բայց հեղինակին «բուն նպատակը», ինչպէս յիշեցի, և «գործոյն էութիւնը» հաստատուած են փաստաբանական նպատակին մէջ». ամօթ չէ՞ այսչափ հակասութիւն։

Սակայն իմ գործս հարուածելու համար չէք մոռնար այս խոստովանութեան քով կցել ձեր գոց ըրած և ի դէպս և յանդէպս յեղյեղած յաւիտենական խօսքը. «բայց ասոնք «բոլորովին նոր» ալ չեն ազգային պատմութիւն մշակողներուն համար»։

Եւ չէք յիշեր մէկ քանի մշակողներ՝ որք հրապարակաւ պարզած ըլլան իմ տեսութիւններս։

«Նոյնը կըսեմք» սկսուածով հատուած մ՚ալ կայ՝ ձեր գրածին մէջ որուն իմաստը չհասկըցայ։

«Նոյնը» նախընթաց հատուածին ո՞ր բառին, ո՞ր նախադասութեան կը վերաբերի, փափաքելի է որ՝ այս լեզուով գրուածներ քիչ անգամ երեւին հրապարակին վրայ. . . ։

Է. Կըսէք. «Հեղինակը բորբոքեալ ցասման կը հասնի երբեմն երբ Արշակի և Պապի տրուած անարգական բացատրութիւններու դիմաց կը կը տեսնէ օտար կայսրներու և զօրապետներու տրուած գովեստի բացատրութիւնները»։

Իրաւունք չունի՞մ. ինչո՞ւ կը քօղարկէք ձեր զգացումը. կախորժի՞ք որ Պապ և Արշակ հայրենասէր մեծ արքայներ նախատուին թեթեւ սխալանքներու համար՝ և Կոստանդիանոս և Մեծն Թէոդոս տօնելի սրբոց կարգն անցնին՝ ու երգուին մեր եկեղեցւոյն մէջ. «Ո՜վ Կոստանդիանոս մեծ թագաւոր, վասն մեր բարեխօսեա՛ առ թագաւորն երկնաւոր»։ Նոյնպէս և պաշտուի Թէոդոս։ Այս այն Կոստանդիանոսն է՝ որ իւր ընտանեաց արեան մէջ լողաց. այն Թէոդոսն է՝ որ քաղաքի մը խռովութեան ժամանակ ութ հազար անմեղ մարդիկ կոտորեց։

Ահա ասոր համար ես կը կասկածիմ Խորենացւոյն հայրենասիրութեան վրայ. և դուք իրաւունք չունիք զիս մեղադրելու՝ թէ քանի որ ուրիշ անողոք քննադատներ չեն ունեցած այս կասկած՝ ե՛ս ալ չունենամ։ Այո, Խորենացին իւր նախնի արքայք և իշխանք «վայրենի, անբան, անասուն» կը կոչէ, կը հեգնէ Արշակայ քաջութիւնը, կը

խնդայ, կը ծիծաղի Արշակայ և Պապի դժբաղդ վախճանին վրայ. իւր ազգակիցներ կոտորող օտար զօրապետաց «քաջ, քաղցր, բարի» մակդիրները կուտայ. չգիտեմ թէ ես ինչո՞ւ քանի մը անգամ լացի Արշակայ և Պապի պատմութիւնը գրած ատենս. խե՞նդ եմ ես։

Ը. Իմ. դաւանած սկզբունքներս զօրս ընդունած են մեծ իմաստասէրք և քաղաքակիրթ ազգեր՝ կը յիշէք, բայց չէ՛ք ըսեր թէ անոնք լա՞ւ են թէ յոռի։ Այլ զիս անուանարկելու համար՝ ամօթալի զրպարտութեան կը դիմէք. կըսէք թէ. «Արշակայ և Պապին վերագրուած գործոց և վարուց ապականութիւնը հեղինակին տեսութեանց մէջ քաղաքային իմաստութեան գործեր կը դառնան»։

Որո՞նք են այդ «ապականեալ գործեր», որ ես իմաստութիւն կընդունիմ, ինչո՞ւ մէկ երկուքը չէք ցուցըներ։ Ի՞նչ ըսած եմ. պոռնըկութի՞ւն, չնութի՞ւն, կաւատութի՞ւն ըրէք. գողցէ՞ք, զրկեցէ՞ք, զրպարտեցէ՞ք, մատնեցէ՞ք, հաւատքնիդ ուրացէ՞ք «կրօնափոխութիւնը ձեր քսակին և որովայնին» գործի՞ք ըրէք*. ասոնց ո՞րը ըսած եմ, ինչո՞ւ չէք ըսեր համարձակ՝ և խաւարի մէջ ծածկուած սուր կուղղէք ինձ։

Թ. Կըսէք. «Գրութեան ոճը եռանդնոտ է և հաճութեամբ ընթեռնլի». այլ կը յաւելուք. «խառն է» երգիծական բացագանչական» ասու-

(*)Անկարելութիւն նոյն իսկ Օրմանեանի վարուց ընթացքին։

թիւններով, որք լուրջ և քննադատական գրութեանց պահանջներէն դուրս են»։

Դուք գրագիտութիւն գիտէ՞ք, գրագէ՞տ էք, մեծ հեղինակներ կարդացա՞ծ էք։ Երգիծանութիւնը՝ եթէ ի դէպ գործածուի՝ գրականութեան ամէն ճիւղերուն «գեղեցկագոյն զարդերէն» մին է, մեծ տաղանդներու նշանաբաններէն մի՛ն է այն։

Բայց սա «բացագանչական» բառը չհասկցայ, դիտմա՞մբ արդեօք յաճախ կը գործածէք այսպէս մութ անիմաստ բառեր՝ որպէս զի ռամկին աչաց խորհի՞ն, հանճարե՞ղ երևիք...։

Եւ այսչափ դատափետութենէ ի՞նչ եզրակացութիւն կը հանէք, գիտէ՞ք.— բոլորովին ինձ նպաստաւոր. կըսէք.

Ա. «Կարևորութեան տեսակէտով մեծ և նշանաւոր երկասիրութիւն մը չէ.

Բ. Քննադատական տեսակէտով բոլորովին լրացեալ գործ մը չէ»։ Այս երկու եզրակացութեանց ի՛նչ արժէք ունենալը ցուցուցինք լի ու լի։ Գանք բուն ճշմարտութեան՝ զոր դողդոջուն ձեռքով դրոշմեր էք այդ հռչակաւոր քննադատութեան իբր կնիք. Եւ կը յարէք.

«Սակայն միւս կողմանէ «Հարկ» է յայտարարել թէ.

1. «Ազգային պատմութեան մէջ քննադատական հոգին արծարծելու «օգտակար է».

2. Ազգային պատմութեան հետաքրքրական մի կէտը «յաջողութեամբ լուսաբանած է».

3. Իւր «մասնաւորեալ սահմանափակ նպատակին հասած է».

4. Գրագիտական տեսակէտով «հաճութեամբ ընթեռնլի գրութիւն մի է»։

Եւ նա ծնաւ մուկն ջնջի՛ն։

Այս կարեւոր առաւելութիւնները խոստովանելէ յետոյ կըսէք. «Բայց մրցանակի մասին չեմ կրնար վճիռ տալ, նայեցէ՛ք ուրիշ գործ մը գտէ՛ք, եթէ չկա՛յ՝ ստեղծեցէ՛ք և մրցանակը Մուրատեանին մի տաք»։

Ձեր այս պարբերութեան և Յանձնաժողովոյ Արժ. տեղեկաբերին սա խօսքին մէջ թէ՝ «Տիրմազանեանի գործը միայն Գարեգին Սրբազանին յանձնեցինք, «զի ըստ ինքեան քնահատելի գործ մ'էր» այս երկու խօսքին մէջ՝ կըսեմք, հաղորդիչ թել մը կայ։

— Մուրատեանի գործը գնահատելի է, բայց որովհետև Տիրմազանեանի գործն ալ ընտիր է և հեղինակը ծերունի, ուստի մրցանակը Տիրմազանեանի տալ պէտք է։

Այսպէս լուծուեցաւ այս խնդիրը։

Իւր խորաթափանց մտօք իսկոյն հասկըցաւ խնդրոյն այս կերպ լուծումը հանճարեղն Հայրիկ։

Գեր. Օրմանեանի քննադատութեան և խնդրոյն այս կերպ լուծման առթիւ ի դէպ է որ յիշենք ասատ Ռուս մեծ բանաստեղծին խօսքը.

«Վա՜յ այն խորտկին որ կօշկակարն է եփեր, վա՜յ այն կօշկին որ խոհարարն է կարեր».

Եւ վերջացնենք։



# ՎՐԻՊԱԿՔ

| Էջ | Տող | Վրիպակ | Ուղիղ |
|---|---|---|---|
| է | 6 | ժողովրդաց | ժողովրդոց |
| ը | 17 | եւ ուրիշ այսպիսի.. | եւ ուր կանհետանան ուրիշ այսպիսի.. |
| ժ | 11 | մեկն աբանութեամք | մեկնաբանութեամբք |
| 16 | 24 | կարասցին | կարասցեն |
| 24 | 6 | աշխարհաւէր | աշխարհաւեր |
| 24 | 27 | երես 70 | երես 90 |
| 25 | 16 | Հռովմէացւոց | Հռովմայեցւոց |
| 62 | 20 | խռովուխիւն | խռովութիւն |
| 62 | 23 | ոխսւթեամբ | ոխութեամբ |
| 64 | 9 | զմայրեւօքն | զմայրեօքն |
| 86 | 6 | զհեռին անապարհ | զհեռի ճանապարհ |
| 87 | 25 | այո՞ | ա՞յս |
| 93 | 21 | արդիւնին | արդիւնքին |
| 93 | 29 | կայսերած | կայսերաց |
| 101 | 3 | զԱարշակ | զԱրշակ |
| 104 | 21 | զԱարշակ | զԱրշակ |
| 135 | 25 | բարձեազ | բարձեալ |
| 142 | 6 | Եկեղեցեաց | Եկեղեաց |
| 158 | 5 | ղօշաքաղ | զօշաքաղ |
| 160 | 25 | պէս՝ որով | պէս՝ հալածեց, որով |
| 173 | 16 | յարզունիս | յարքունիս |

